

# ՈՍԿՅԱ ԳԵՂՄ

(Կրճատ)

ԱԼԵՔՍԱՆԴՐ ՎՈՅՆՈՎ

Այս էլ չորրորդ ամառն է, ինչ Սամվելը հյուր է գալիս Նաիրի պապիկի մոտ, որի տնակը գտնվում է Արաքսի ափին։

Առաջին անգամ այստեղ հայրը բերեց Սամվելին, երբ նա ինը տարեկան էր։ Գումարեք իննին երեք և կիմանաք Սամվելի այժմյան տարիքը։

Հայրն ասաց Նաիրի պապիկին.

— Իհարկե, ես կարող էի նրան ուղարկել պիոներական ճամբար, բայց ես ցանկանում եմ, որ Սամվելը հանգստանա իմ հայրենիքում և միաժամանակ օգնի քեզ։

Յոթանասունամյա Նաիրի պապիկն ուրախ նայելով թոռանը, ասաց.

— Լավ... մենք միասին սար կգնանք. ես նրան կսովորեցնեմ ոչխարներին խնամել։

Նաիրի պապիկը քառասուն տարի անընդհատ հովվություն է արել. նրա սենյակի պատերը զարդարված են աշխատանքային պատվոգրերով, իսկ կրծքին փայլում է շքանշանը։

Դա սկզբում զարմացրեց Սամվելին. «Ի՞նչ մեծ բան է ոչխար արածացնելը, առ ճիպոտն ու քշիր...»

Բայց երբ նա պապիկի հետ սար գնաց, նոր միայն հասկացավ, թե ինչքան մեծ ու դժվար աշխատանք է դա. հարկավոր է հանախակի հոտը տեղափոխել մի արոտավայրից մյուսը, հետևել, որ ոչխարները ծարավ չմնան, ժայռից պոկվելով չընկնեն անդունդ ու ջախջախվեն. և ամենակարևորը՝ պահպանել հոտը կատաղի գայլերից ու բորենիներից։

Շատ բան գիտի այժմ Սամվելը։ Նա ձեզ կարող է պատմել խաղողի ամենատարբեր տեսակների մասին, գիտի, թե որ տեսակն է ավելի քաղցր և որն է շուտ հասնում։ Նա գիտի, որ Արաքսը ոչ միայն գետ է, այլև սահման. որ նրա մյուս, քարքարոտ ափն արդեն պատկանում է Թուրքիային, և զառիթափին տարածված գյուղի խղճուկ ու կավածեփ խրճիթներում ապրում են թուրքեր։

Սամվելը հոգու խորքում ունի մի գաղտնի ցանկություն. «Ո՞ւր էր, թե կարողանայի մի լրտես բռնել և հանձնել սահմանապահներին։ Աշնանը, երբ վերադառնայի դպրոց, պիոներական հավաքույթում կպատմեի իմ կատարած սխրագործության մասին։ Ա՛յ, դա արդեն գործ կլիներ, թե չէ ի՞նչ են այս տուփերում հավաքած կարիճները...»

Բայց հակառակ Սամվելի ցանկությանը՝ ոչ ոք չէր խախտում սահմանը։

Այդ օրերին Սամվելին սկսեց զբաղեցնել նաև մի ուրիշ գաղտնիք։ Ճանապարհից ու շավիղներից հեռու, լեռան քարքարոտ լանջին նա նկատեց մի խոր ու ցամաքած ջրհոր։ «Ովքե՞ր և ե՞րբ են փորել այս ջրհորը, չլինի՞ այստեղ մի ժամանակ մարդիկ են ապրել...» — մտածեց նա։

ՀՈՒՆԻՍ
№ 6 1961 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Այդ մասին նա հարցրեց ծեր ուսուցչին, որը երկար տարիներ ապրել էր այդ գյուղում, բայց նա անգամ չէր էլ լսել այդ ջրհորի մասին: Իսկ Նաիրի պապիկը լսելով ջրհորի մասին, միայն կնճռոտեց ճակատն ու լռեց։

Այդ հարցով Սամվելը դիմեց նաև սահմանային կապիտան Միրոնովին։ Բայց նա էլ ոչինչ չկարողացավ պատասխանել։

Եվ այդպես, ամբողջ ամառվա ընթացքում ոչ մի նշանակալից դեպք չպատահեց, որի մասին Սամվելը կարողանար հպարտությամբ պատմել տղաներին. ճիշտ է, նա ավելի ամրացավ ու լցվեց, բայց դա ի՞նչ պատմելու բան է որ...

Մի անգամ Նաիրի պապիկը, որ Սամվելին արդեն համարում էր իր հուսալի օգնականը, ասաց.

— Ես մի քանի օրով գնում եմ գյուղ, պահպանիր հոտը և հետևիր, որպեսզի ոչխարները փորձանքի չգան։

Սամվելը հոտը տարավ արածացնելու, իսկ ինքը բարձրացավ մի ժայռի վրա և սկսեց շրջակայքը դիտել։ Իրենից ոչ շատ հեռու տարածվել էր լայն բացատը, որտեղ կանաչի միջից արևի տակ փայլփլում էին հասուն ծմերուկները։

Սամվելը ծարավ զգաց. ճիշտ է, գոտիկից կախած տափաշշի մեջ ջուր կար, բայց մի թե այդ գոլ ջուրը կարելի էր համեմատել ծմերուկի կարմիր, պաղպաղականման միջուկի հետ։ Նա առանց երկար մտածելու վազեց դեպի բացատը: Բայց հենց այդ պահին ինքնաթիռը ահեղ դղրդոցով՝ ցածր, շատ ցածր անցավ լեռնալանջին տարածված հոտի վրայով:

Վախեցած ոչխարները խուճապահար նետվեցին դեպի քարակույտերը, որտեղ ջրհորն էր։

Սամվելը երբ վերադարձավ, ոչխարներն արդեն հանդարտվել էին։ Նա արագ նրանց քշեց ջրհորի մոտից, ապա պառկեց, գլուխը կախեց ջրհորի վրա և ականջ դրեց: Ջրհորի մութ խորքից նրա ականջին ոչխարի թույլ մայուն հասավ։ «Ի՞նչ անեմ,— անցավ նրա մտքով.—վազեմ գյու՞ղ, օգնությո՞ւն կանչեմ՝ ոչխարները կմնան առանց հսկողության. բղավե՞մ, բայց գյուղը հեռու է, չեն լսի: Իսկ ի՞նչ անեմ...» Եվ ճարը չգտնելով, նա հուսահատ նստեց մի քարի ու սկսեց արտասվել։

— Է՜յ, մոսկվացի, ի՜նչ ես լալիս...

Սամվելը շրջվեց։ Նրա առջև կանգնած էր կապիտան Միրոնովը՝ երկու սահմանապահի հետ։

Սամվելը կցկտուր պատմեց պատահարը: Կապիտան Միրոնովը մոտեցավ ջրհորին, կռացավ և խորքից աղեկտուր մայուն լսելով ասաց.

— Կենդանի են, բայց եթե հաջողվի անգամ նրանց հանել, հազիվ խորոված համար պիտանի կլինեն:

Սամվելը հեկեկաց։ Միայն թե շուտ ազատեին խեղճ արարածներին, թեկուզ նրանք միայն թեթև վնասվածքներ ունենան։

Կապիտան Միրոնովը զինվորներին ուղարկեց գյուղ՝ պարաններ բերելու։ Նրանք տասը րոպեից վերադարձան՝ պարանների մեծ կծիկները ձեռքներին։

Կապիտանը դիմեց բարձրահասակ զինվորին.

— Կոստանյան, կմտնե՞ս ջրհորը։

— Կմտնեմ, ընկեր կապիտան...

— Թողեք ե՛ս մտնեմ,— կանչեց Սամվելը։

— Քեզ չի՛ կարելի,— կտրուկ ասաց կապիտանը։



Սամվելը մի կողմ քաշվեց ու սկսեց լուռ նայել։

Կոստանյանը մյուս բանակայինի հետ երկու պարանի ծայրերը կապեց քարից, մյուս ծայրերից մեկը կախեց ջրհորի մեջ, մեկը կապեց մեջքին, գոտկին ամրացրեց լապտերը և բահը վերցնելով՝ սկսեց իջնել ջրհորը։ Մյուս բանակայինը և կապիտանը ստուգում էին պարանները, իսկ Սամվելը մտածում էր, որ եթե ինքը իջներ, ապա վաղուց ոչխարները վերևում կլինեին։

Միրոնովի երեսով հոսում էին քրտինքի խոշոր կաթիլները, նրա ջլուտ ձեռքերը հետզհետե թողնում էին պարանը։ Պարանն անընդհատ վար էր սողում, և Սամվելին թվում էր, թե ջրհորը տակ չունի։

Հանկարծ ներքևից լսվեց խուլ ձայն։

— Կանգնի՛ր...

Պարանը անմիջապես թուլացրին։ Կապիտանը ձայնաշեփորի նման ձեռքերը դնելով բերանին՝ բղավեց։

— Ի՞նչ պատահեց, Կոստանյան։

Սամվելը նույնպես մոտեցավ ջրհորին։ Ներքևից փայլփլում էր լապտերի փոքրիկ լույսը։ Ջրհորի պատերի վրայով վեր ու վար էին վազվզում մողեսները, չհասկանալով, թե ինչը խանգարեց ջրհորի դարավոր լռությունը։

— Կոստանյան, ի՞նչ է պատահել,—կրկնեց կապիտանը։

Քաշե՛ք,—վերջապես լսվեց ներքևից։

Միրոնովը ուժերը հավաքելով արագ-արագ վեր քաշեց պարանը և դուրս հանեց առաջին, սպիտակ ոչխարը։

Սամվելն անմիջապես սկսեց շոշափել ոչխարի մեջքը, ոտքերը՝ փնտրելով վնասվածքներ։ Երբ նա դիպավ ոչխարի ձախ ոտքին, ոչխարը վեր ցատկեց, դուրս պրծավ ձեռքից և սկսեց տրտինգ տալ։ Բոլորը լարված հետևում էին ոչխարին, երբ հանկարծ նկատեցին, որ նրա մորթուց այս ու այն կողմ էին շաղ գալիս ոսկյա դրամներ։ Սամվելը արագ վերցրեց մի ոսկյա դրամ և սկսեց հետաքրքրությամբ զննել։ Դրամի վրա ինչ-որ հին, անծանոթ տառեր էին փորագրված։ Կապիտան Միրոնովը և մյուս զինվորները նույնպես վերցրին մեկական դրամ և սկսեցին մանրակրկիտ դիտել։

— Հրաշք է,—ասաց կապիտանը։

Այդ պահին Կոստանյանը նորից ձայն տվեց. մեկ րոպե անց ևս մի ոչխար դուրս հանեցին։ Պարզ երևում էին նրա բրդին խառնված ոսկյա փայլուն դրամները։

Այս ոչխարն էլ առանձնապես վնասվածք չուներ, երևի ոչխարներին օգնել էին ջրհորի կողքի ցցվածքները, որոնք գահավիժելու ժամանակ պահել էին նրանց՝ թուլացնելով անկման թափը։

Կապիտանը և բանակայինը բռնեցին ոչխարին, իսկ Սամվելն սկսեց թափ տալ դրամները։

— Ա՜յ, սա իսկական ոսկյա գեղմ է,—ուրախ բացականչեց Միրոնովը և կռանալով ջրհորի վրա՝ բղավեց.

— Է՜յ, Կոստանյա՜ն, դեռ շա՞տ ոչխարներ կան այդտեղ։

— Սպասեցե՜ք, լսվեց ներքևից։

Սամվելը հանեց գլխարկն ու սկսեց հավաքել գետնից ոսկյա դրամները։ Դրանք բոլորը տարբեր ձևի ու չափսի դրամներ էին։ Մի քանիսի վրա կային հետաքրքիր նախշեր, մյուսների վրա արևի, առյուծի կամ եղնիկի դրոշմանկարներ։ Միրոնովը վերցրեց մի բուռ դրամ, նետեց վեր և ապա նորից բռնեց։



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

— Ինչ տարօրինակ է,—ասաց նա՝ գլխով նշան անելով թուրքական գյուղի կողմը,—եթե այս դրամտերը գտնեին նրանք՝ ինչպիսի դժբախտությունների առիթ կլիներ դա, այս ջրհորի շուրջը կփայլփլեին ագահությունից շլացած աչքեր, յուրաքանչյուրը կցանկանար հարստանալ... Իսկ ի՞նչ է ինձ համար այս ոսկին—ոչինչ, իսկ քեզ համա՞ր, Սամվել...

— Ես մի քանի հատ միայն կվերցնեմ՝ դպրոցում ցույց տալու համար։

— Վերցրու,—ասաց կապիտանը,—դու լիակատար իրավունք ունես այդ անելու, բայց սկզբում





թող ուսումնասիրեն գիտնականները։

Ներքևից լսվեց.

— Քաշե՛ք...

Բոլորը կպան պարանից և սկսեցին ձգել։

Մեկ րոպեից հետո Կոստանյանն արդեն վերևում էր. Նրա կլոր դեմքին սառել էր մի խորհրդավոր ժպիտ, իսկ գրպանները անսովոր ուռած էին։

Ընկեր կապիտան,— ասաց նա,— թույլ տվեք զեկուցել ջրհորի հատակում տեսածիս մասին։

Զեկուցեցե՛ք։

Տեսե՛ք, բայց սա բոլորը չէ. այնտեղ դեռ շատ կա։ Եվ Կոստանյանը դուրս թափեց գրպաններից զրնգացող դրամները։

Շուտով ջրհորի մոտ ոսկու և արծաթի մի փոքրիկ սար գոյացավ։ Հետո Կոստանյանը իր լայնեզր գլխարկը լցրեց դրամներով, և սահմանապահները գնացին ուղեկալ։

Իսկ երեկոյան, խարույկի մոտ, ոչխարի մորթու վրա պառկել էր Սամվելը և կրակե լեզուներին նայելով պատկերացնում էր այն օրը, երբ ինքը կվերադառնա տուն և ընկերներին կպատմի այդ խորհրդավոր ջրհորի մասին...

— Իսկ ես գիտեմ, թե որտեղից է ջրհորի մեջ ընկել դրամը,— կրակին ցախ ավելացնելով խոսեց Նաիրի պապիկը։— Դարեր, շա՜տ դարեր առաջ այս տեղերով դեպի Կովկաս է գնացել Լենկ-Թեմուրը, անցել են մոնղոլները, անցել են շատ քարավաններ։

Այս ջրհորը համարվել է սուրբ, և մարդիկ նետել են նրա մեջ դրամներ, որպեսզի բախտը իրենից չլքի։ Լսու՞մ ես, Սամվել, թե ինչ եմ պատմում։

— Լսում եմ, պապիկ,— բայց ինչու՞ ոչ ոք չէր հիշում այդ ջրհորի մասին։

— Մեր երկրի վրայով շատ թշնամիներ են անցել, ոչնչացրել են շատ ամրոցներ, գյուղեր ու քաղաքներ։ Սպանել են բոլորին՝ մեծից—փոքր, հետո եկել են ուրիշները, բայց նրանք արդեն չեն իմացել այդ ջրհորի հետ կապված հին ավանդությունն ու սովորությունը։

Սամվելը լսում էր ու նայում գիշերվա մութի մեջ քարերի սև ուրվագծերին, որոնք նրան թվում էին մերթ զինված ձիավորներ, մերթ էլ ապրանքով բարձված ուղտերի քարավան... Ինչքա՜ն մարդիկ են անցել այդ հին ջրհորի կողքով ու երջանկության սպասումով նետել նրա մեջ իրենց դրամները։ Նրանք անցել են վաղուց, իսկ դրամները մնացել են, որպեսզի սերունդներին պատմեն նրանց կյանքի, կենցաղի և սովորությունների մասին։

Ահա և ամբողջ պատմությունը «Ոսկյա գեղմի» մասին, որ ինձ պատմեց ինքը՝ Սամվելը։ Նա ինձ հրավիրեց իրենց դպրոցի թանգարանը, որտեղ սեղանին, ապակու տակ փայլփլում էին ոսկի դրամները...

Իսկ ինչքա՜ն գաղտնիքներ կան դեռևս նրա հազարամյա հայրենիքի ընդերքում։

*Ռուսերենից թարգմ. ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ*

# ՈՒՇ ԺԱՄԻՆ

Նկ. ԿԱՌԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

ՄԻՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ

*Մութ է արդեն, չե՞ս իմանում,*
*Փոքրիկ, սիրուն աղջիկ.*
*Ուշ է արդեն, ու՞ր ես գնում*
*Քայլերով քո մանրիկ:*

*Թիթեռներն են քնել արդեն*
*Ծաղիկների ծոցում,*
*Որ իմանան՝ կխռովեն,*
*Դու մենակ ես դրսում:*

*Տե՛ս, աստղերը քեզ են ծաղրում*
*Հերի՛ք է վազվզես.*
*Ասում են՝ տուն գնա իսկույն,*
*Մայրդ փնտրում է քեզ:*



ԲԱՂԴԱԴԻ ԼԱՅՆ ՓՈՂՈՑՆԵՐԻՑ ՄԵԿԸ

# ՀԱ՛ՆԴԻՊՈՒՄ ՕՏԱՐ ԱՓԵՐՈՒՄ

*ԱՐԾ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

(Հայկ. ՍՍՌ ժող. դերասան)

Որպես զբոսաշրջիկ, ինձ վիճակվեց լինել հեռու երկրներում: Իմ այդ ուղևորության տպավորությունների մասին չէ, սակայն, որ պիտի պատմեմ, այլ այն փոքրիկ աղջկա մասին, որն իմ հուշերի մշուշոտ շղթայում մընաց որպես մի ոսկյա օղակ:

«Պոբեդա» նավը խարիսխ էր ձգել հունական Պիրեյա նավահանգստում: Նավն այստեղ մընալու էր մոտ ութ ժամ: Բայց այդ ժամանակամիջոցն էլ բավական էր Հունաստանի մայրաքաղաք Աթենքում լինելու համար, որը հեռու չէ այդ նավահանգստից: Ո՞վ չի ուզում տեսնել դարերից եկող այդ երկրի պատմական հին հուշարձանները՝ Ակրոպոլիսը, Պարթենոնը, Դիոնիսի թատրոնի ավերակները, Զևսի հռչակավոր տաճարը, անտիկ արվեստի հարուստ թանգարանները...

Քիչ անց մենք՝ արդեն սեղմում ենք մեզ դիմավորողների բարեկամական ձեռքերը: Աթենքի հայ գաղութի առաջադիմական կազմակերպությունների ներկայացուցիչներն են դրանք, հայատառ «Երկիր» թերթի աշխատակիցներ, ուսուցիչ—ուսուցչուհիներ, հասարակական գործիչներ, պաշտոնական անձինք:

Այդ իրարանցման մեջ հանկարծ աչքովս է ընկնում ճերմակ վերնաշապկով մի փոքրիկ աղջիկ: Աղաչական մի արտահայտություն աչքերում, նա անվերջ պտտվում է մեր շուրջը, ինչ-որ բան է ուզում ասել:

Մատուցվում է տուրիստական ընկերության ավտոբուսը, և շտապ տեղավորվում ենք: Մեքենան պոկվում է տեղից... Եվ հենց այդ պահին փոքրիկ աղջիկը աննկատելի սողոսկում է մեր ավտոբուսը և գող փիսիկի պես կծկվում մի անկյունում: Հույն գիդը չի նկատում, իսկ մեզանից ոչ մեկի մտքով չի անցնում միջամտել. Ի՞նչ իմանաս, օտար քաղաք, օտար բարքեր...

Հասնելով Աթենք, մենք նախ շրջում ենք քաղաքն ու ծովափնյա վայրերը: Ահա մեքենան ճիգ թափելով, դանդաղ բարձրանում է զառիվեր մի փողոցով: Բարձունքում, պարզ երկնքի լազուր ֆոնին հանկարծ գծագրվում է մի վիթխարի կոթող: Ակրոպոլի ճերմակ կառույցներն են:

Հիացած դիտում եմ, երբ հենց կողքիս լսում եմ մի ձայն:

Ներեցեք... պարոն:

Այն աղջիկն է: Նավամատույցի փոքրիկ աղջիկը:

— Իմացա, որ դուք դերասան եք, անհամարձակ սկսում է նա:

— Այո. ի՞նչ կա որ:

Պիտի խնդրեի ձեզ...

— Խնդրեմ, խնդրեմ, մի քաշվեք:

Իմ անունը Մարի է, Մարի Լեյլեկյան:

— Շատ ուրախ եմ, աղջիկս, խոսիր:

— Հայրս Քյոթահեցի էր, Կոմիտասի հայրենակիցը... կաշեգործ բանվոր էր... մեռնելիս պատվիրեց ..

Աղջիկը դառը դեղահատի պես կուլ է տալիս հուզմունքը:

— Պատվիրեց, որ չմնամ այս օտար երկրում: Ես էլ մեծ փափագ ունիմ երգչուհի դառնալու: Կերգեմ այժմ նախակրթարանի խմբի մեջ: Բայց այստեղ, Աթենքում, մեզ համար շատ դժվար է կոնսերվատորիա ընդունվել: Ռադիոյով կլսեմ Հայրենիքիս ձայները: Հայրս շատ կսիրեր «Կռունկը», «Կիլիկիան»: Երգը շուրթերին մեռավ...

Ծանր էր իմ դրությունը: Մխիթարելու խոսքեր եմ փընտրում: Սակայն, խրտնած եղնիկի աչքերով աղջիկը անվերջ խոսում է, բացատրում:

— Սովետ երկրի, Հայրենիքի մասին ես շատ բաներ լսած եմ: Ի՞նչ երջանկություն, ի՞նչ բախ-

տավորություն կլիներ... Թերևս դուք խնդրեիք նավապետից...

Ահա թե ինչ: Ի՞նչ կարող եմ անել, ի՞նչ պատասխան տամ հայրենատենչ այս աղջկան:

— Ես կաշխատեմ,— շարունակում է նա,— լեզուներ գիտեմ... Ոչ մի տեսակ աշխատանքից չեմ խորշի:

Ես նրան ասում եմ, որ մենք զբոսաշրջիկներ ենք և ոչ մի իրավունքից չենք օգտվում այս երկրում: Այդ իրավունքից զուրկ է նաև մեր նավապետը: Բացատրում եմ, համոզում Մարիին և բաժանվում:

Աթենքի ազգային հնագիտական թանգարանը դիտելուց հետո ավտոբուսն ենք բարձրանում, և ահա նորից նա՝ Մարին: Նա հայտնվում է այստեղ և փորձում նորից մեզ հետ լինել: Մեր գիդը այս անգամ նկատում է «անկոչ հյուրին», մռայլորեն խոժոռվում և քաշելով թևից՝ դուրս հրավիրում:

Առարկելու խոսք չգտնելով՝ աղջիկը կարմրատակած, մի պահ տատանվում է, ապա օրորվելով հեռանում:

Անզոր լինելով որևէ կերպ միջամտել, օգնել արդեն հարազատացած Մարիին, ինձ մնում է խորը կարեկցանքով ճանապարհել նրան: Մեքենան շարժվում է:

Մոտակա խաչմերուկի անկյունում երևում է նրա մի փոքր թեք, կքած-կծկված մարմնի ուրվագիծը, ապա մերվում մարդաշատ հոսանքին:



ԿՈՇԻԿ ՍԱՔՐՈՂ ՋԱՄԻԼԸ

Օրը թեքվում է արդեն, հարկավոր է շտապել: Մի քանի այլ տեսարժան վայրեր ևս շրջելուց հետո, յոթ հայ զբոսաշրջիկներս բարձրանում ենք բազմահարկ հյուրանոցի այն հարկաբաժինը, ուր կազմակերպված է հանդիպում—ընդունելությունը: Մեզ դիմավորողների թվում ավելացել են նոր դեմքեր: Նորից հուզումնալից մթնոլորտ, հայրենաբաղձ ճառեր: Ելույթ ունեցողները սրտի անհուն կարոտով են խոսում Սովետական Հայաստանի, նրա մեծ նվաճումների մասին:

Հանկարծ աչքիս է ընկնում Մարին, Մարի Լեյլեկյանը: Որտեղի՞ց հայտնվեց: Նա նույն աղաչական «Ներեցեք ինձ, խընդրում եմ» արտահայտությունը դեմքին, կանգնած մի անկյունում: Ժպիտը ասես սառել է գունատ դեմքին: Ես, կրկին, չեմ լսում ելույթները: Իրոք, ինչո՞վ կարելի կլիներ օգնել այս աղջկան...

Մարդիկ անվերջ ժամացույցին են նայում: Ընդամենը մեկ ժամ է մնացել: Ավարտելով հանդիպման արարողությունը, շտապում ենք Պիրեյա: Մենք արդեն նավահանգստումն ենք: Եվ ահա Մարին նորից այստեղ է: Բորբոքված հայացքով հետևում է մեզ: Ես մոտենում եմ:

— Այդպես շո՞ւտ հասար, աղջիկս:

Հուզմունքից դողալով, հևիհև շնչում է, թաշկինակով սրբելով փոքրիկ, կարծես առավել գունատված դեմքը:

— Այո՛,— ձգում է նա մեղավորի ձայնով,— հասցրի... շտապելուց կորցրի պայուսակս:

— Ինչպե՞ս...

— Չիմացա ուր թողի... Բայց ոչինչ, կարևոր չէ... առանձին բան չկար մեջը:

Նա աղաչական, պարտավորեցնող հայացքով նորից կախվում է աչքերիցս: Խեղճ աղջիկ, ախր ես քեզ ինչո՞վ օգնեմ: Մոտենում է մեր գիդը և մեզ նավ հրավիրում, իսկ փոքրիկ Մարիին այս անգամ արդեն խիստ կոպտաբար, սպառնալից խոսքեր նետելով, հեռացնում...

Հրաժեշտ ենք տալիս մեզ ճանապարհողներին ու բարձրանում նավ:

Քիչ անց, նավամատույցը երերում, շարժվում, ետ-ետ է գընում: Մեր հսկան դանդաղ պոկվում է քարեղեն մատույցից, և ճեղքելով իրիկնամուտը, լողում դեպի ծով:

Ճախրում են ճերմակ ճայերը: Ծովի հեռուներից տեսանելի է դառնում հնամյա քաղաքն իր անթիվ լույսերով:

Հեռու նավամատույցում դեռ կանգնած է այն աղջիկը՝ Մարին: Մարի Լեյլեկյանը: Աղոտ երևում են նրա ճերմակ շապիկն ու թափահարվող ճերմակ թաշկինակը:

Նկարիչ Հրաչյա Ռուխկյանն այս տարի որպես տուրիստ եղավ արևելյան մի շարք երկրներում: Տպագրում ենք նրա ճանապարհորդական ճեպանկարներից մի քանիսը:



ԹԱՓԱՌԱՇՐՋԻԿ ՑԵՂԵՐ

## ԲԱՐԴԻՆ ՈՒ ՎԱՐԴԸ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Մի անգամ
Բարդին
Ձայն տվեց
Վարդին.
— Ինձ դուր է գալիս
Քո բույրը քաղցր,
Բայց թե լինեիր
Ինձ նման բարձր,
Ամպերին մոտիկ,
Քեզ չէին պոկի...
Վարդն ասաց նրան.
— Լսի՛ր, հարևան,
Ես քեզ չեմ ասում՝
Թեքվիր, ցածրացիր,
Որքան կարող ես՝
Երկինք բարձրացիր,
Գեղեցիկ ծառ ես,
Քեզ էլ են գովում.
Շոգին հոգնածն է
Քնում քո հովում:
Այգում, թե արտում
Եկ օգնենք մարդուն
Դու՝ քո շվաքով,
Ես՝ իմ բուրմունքով...

## ԳԵՏԸ ԵՎ ԾՈՎԸ

Երկու գուլալ-կայտառ առվակ.
Միանում են, կազմում գետակ:
Երկու գետակ
Ծառերի տակ
Զրուցում են մեկ-մեկու հետ,
Իրար խառնվում ու դառնում գետ:
Գիշեր-ցերեկ,
Սար ու ձորում
Վարար գետն է
Կանչում, գոռում:
Փրփուր կապած
Հոսում, հոսում,
Հասնում ծովին,
Ուրախ խոսում.
— Ես լեռներից
Ջուր եմ բերել,
Ծաղիկների
Բույր եմ բերել:
Թող խոր մնա կապույտ ծովը,
Շուրջը փռի հովն ու զովը,
Որ խոպանում
Երգեն արտեր,
Ծաղկեն ծառեր,
Բացվեն վարդեր...

Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՓՈՔՐԻԿ ԲԱՐԵԿԱՄՈՒՀԻՆԵՐԸ

ՖՐՈԲԵԼ ՄԱՐՈՒԹՅԱՆ

Նկ. ՏԻԳՐԱՆ ԱՐԾՐՈՒՆՅԱՆԻ

Փոքրիկ Իրինան շիկահեր ու առույգ մի աղջիկ է: Նա սովորում է Մինսկ քաղաքի 9-րդ միջնակարգ դպրոցի վեցերորդ դասարանում: Մի օր նա դասամիջոցին զրուցում էր ընկերուհիների հետ, երբ հանկարծ ներս մտավ ավագ ջոկատավարը ինչ-որ նամակ ձեռքին ու դառնալով աշակերտներին հարցրեց.

— Երեխանե՛ր, ձեզանից ո՞ւմ ազգանունն է դասամատյանում գրված 12 համարի դիմաց:

Մի պահ տիրեց լռություն: Իրինա Յաբրովան մոտեցավ ավագ ջոկատավարին ու անհանգստացած ասաց.

— Այդ համարի դիմաց իմ անուն-ազգանունն է, բայց ինչո՞ւ եք հարցնում...

Բոլորի հայացքներն ուղղվեցին Իրինայի կողմը: Ավագ ջոկատավարը տեսնելով նրա անհանգստությունը, մտերմաբար շոյեց նրա շեկ վարսերը և ասաց.

— Այս նամակը քեզ է պատկանում...

— Ի՞նչ նամակ,—զարմացած վրա բերեց Իրինան:

— Նամակը, Բուլղարիայի Վառնա քաղաքից է,—բացատրեց ջոկատավարը,—հասցեագրված է քեզ, իսկ թե ումից է, կարդա և իմացիր:

Ընկերուհիների օղակն էլ ավելի սեղմվեց Իրինայի շուրջը: Նա ծրարը ձեռքում մի քանի անգամ շուռ ու մուռ տվեց, նայեց անծանոթ դրոշմանիշներին, կարդաց հասցեն ու կտրեց ծրարը, որի միջից նամակի հետ միասին հանեց մի աղջկա լուսանկար: Ընկերուհիները խնդրեցին, որ Իրինան կարդա բարձրաձայն: Աղջիկը չառարկեց:

«Ես սովորում եմ Բուլղարիայի Վառնա քաղաքի գիմնազիայի 6-րդ դասարանում: Շատ եմ լսել սովետական երեխաների մասին և որոշել եմ նրանցից մեկի հետ նամակագրական կապ պահպանել: Իմ անուն-ազգանունը դասամատյանում լինելով 12 համարի դիմաց, նամակը հասցեագրեցի քեզ:

Սիրելի եղբայր կամ քույրիկ, խնդրում եմ մանրամասն գրես քո մասին և ուղարկես լուսանկարդ: Անհամբեր նամակիդ սպասող

Իորդանկա Վանգելովա»:

Ծանոթանալով նամակի բովանդակությանը, երեխաները շատ ուրախացան:

—Իրի՛նա, գրի՛ր պատասխանը և մեր դասարանի բոլոր աշակերտների կողմից բարևիր նրան,—առաջարկեց ընկերներից մեկը,—ես էլ, արդեն մի տարի է, ինչ այդպիսի նամակագրական կապի մեջ եմ Պրագայում սովորող մի պիոների հետ:

Երկար չանցած Վառնայի փոստատարը Մինսկից ստացած նամակը ձեռքին մտավ այն գիմնազիայի շենքը, ուր սովորում էր Իորդանկան: Փոստատարը դառնալով 6-րդ դասարանի աշակերտներին, հարցրեց.

— Ո՞վ է ձեզանից Իորդանկա Վանգելովան...

Իորդանկան, որ մի խումբ աղջիկների հետ զրուցում էր, վազեց դեպի փոստատարը.

— Ե՛ս եմ...

Փոստատարը նրան մեկնեց նամակը, որը Իորդանկան շտապ վերցրեց ու կարդալով հասցեն, ուրախացած բացականչեց.

— Աղջիկնե՛ր, նամակը Մինսկի՛ց է, նա արդեն ուղարկել է պատասխանը:

Իորդանկան հուզմունքից բեկված ձայնով սկսեց կարդալ նամակը:

«Սիրելի Իորդանկա, ես շատ ուրախացա քո ուղարկած անսպասելի նամակի համար: Ես վաղուց էի մտադրվել նամակագրական կապ հաստատել արտասահմանում ապրող որևէ պիոների հետ: Բայց երկար ժամանակ տատանվում էի ու չգիտեի, թե ինչպե՞ս և ու՞մ հասցեագրեմ նամակը: Դու ավելի հնարամիտ գտնվեցիր: Նամակդ ուրախացրեց նաև իմ դասընկերներին, ինչպես և իմ ծնողներին ու պապիկին: Ես, ինչպես գիտես, սովորում եմ 6-րդ դասարանում, ուսման գերազանցիկ եմ: Ասեմ նաև, որ քո տարիքին եմ, ընդամենը տասներկու տարեկան: Աշխարհագրությունից՝ ինչպես դու Մինսկի, այնպես էլ ես գիտեմ Վառնայի մասին: Ինձ հայտնի է, որ Վառնան հրաշալի ծովափնյա, ամառանոցային քաղաք է...

Եկ խոսք տանք իրար, որ դպրոցում մեզնից ոչ մեկը հինգից ցածր գնահատական չստանա ոչ մի առարկայից: Դա կլինի մեր հեռավոր բարեկամության առաջին նախապայմանը: Առայժմ այսքանը: Բարևում են քեզ իմ ծնողները, պապիկս և մեր դասարանի աշակերտները:



ԻՐԻՆԱ

Նամակիս մեջ ուղարկում եմ լուսանկարս: Համբուրում եմ քեզ, քո Իրինա»: Մեծ հետաքրքրությամբ լսելով Իրինայի գրած նամակի բովանդակությունը, շատերն իրենք էլ որոշեցին նրա օրինակով նամակներ գրել սովետական երեխաներին:

Ահա, այսպես սկսվեց երկու հեռավոր երկրներում ապրող աղջիկների անկեղծ բարեկամությունը: Համարյա ամեն շաբաթ Իորդանկան ու Իրինան իրարից փոխադարձաբար նամակներ էին ստանում: Իսկ երբեմն էլ, երբ նրանք իրար շատ ասելիք էին ունենում, շաբաթը երկու նամակ էին գրում: Դա հաճախ բխում էր կարևոր անհրաժեշտությունից: Օրինակ՝ Իրինան դպրոցում մասնակցում էր թատերական խմբակի պարապմունքներին և միշտ էլ հանդես էր գալիս գլխավոր դերերում: Նա իր յուրաքանչյուր հաջող ելույթից հետո նամակ էր գրում Իորդանկային:

Իսկ Իորդանկան գիմնազիայում մասնակցում էր ասմունքի խմբակին: Նա գրում էր Իրինային, թե ինչ բանաստեղծություններ են նրան հաջողվում լավ արտասանել: Նրանք միմյանց էին ուղարկում նաև իրենց բնակավայրերի տեսարժան նկարները, ինչպես նաև երգեր ու բանաստեղծություններ:

Ընկերուհիների մտերմությունը առիթ հանդիսացավ, որ Իորդանկան կարդա սովետական գրողների բազմաթիվ գրքեր, իսկ Իրինան ծանոթանա բուլղարական գրականության հետ:

Նրանց ծնողներն էլ հեռվից հեռու իրենց դստրերի միջոցով բարեկամացան միմյանց, հաճախ բարևներ էին ուղարկում և առաջարկում հյուր գնալ միմյանց:

Անցած տարի ես մի խումբ սովետական ժուռնալիստների հետ ուղևորվել էի Վառնայի ժուռնալիստների միջազգային հանգստյան տունը: Ճանապարհին ծանոթացա բուլղարացի ժուռնալիստ Սեմիոն Լուրյենի հետ: Մենք շատ մտերմացանք: Նա ծանոթ էր հայ ժողովրդի պատմությանը: Ինձ սիրով պատմում էր այն հայ մարտիկների մասին, որոնք զոհվել են Հայրենական Մեծ պատերազմում Բելոռուսիան ազատագրելիս: Նա գիտեր, որ Վառնայում բնակվում են հայեր: Գուցե հենց դա էր պատճառը, որ դառնալով ինձ հարցրեց.



ԻՈՐԴԱՆԿԱ

— Դուք այստեղ հարազատներ ունե՞ք:

— Ո՛չ,-պատասխանեցի ես,— թեև Վառնայում հայեր կան, բայց հարազատներ չունեմ:

— Իսկ ես ունեմ,— հպարտությամբ ասաց նա ու մեղմ ժպտաց: Ինձ թվաց, թե նա կատակում է:

— Ովքե՞ր են ձեր հարազատները,— տարակուսանքով հարցրեցի ես:

— Հիմա նրանք մեզ կդիմավորեն, և ես ձեզ կծանոթացնեմ նրանց հետ...

Մենք իջանք Վառնայի կայարանի կառամատույցը: Հանկարծ դիմավորողների միջից մեր կողմը վազեց պիոներական վզկապով տասնչորսամյա մի աղջիկ, մի ձեռքում Լուրյենի նկարը, մյուսում՝ գեղեցիկ ծաղկեփունջ:

— Իորդանկա,— ուրախացած բացականչեց Լուրյենը և աղջկան գիրկն առնելով՝ համբուրեց նրա շիկնած այտերը,— ահա և մենք հանդիպեցինք, ես քեզ առանց նկարի էլ ճանաչեցի,

Իսկ դու երևի նկարը բերել ես, որ ինձ ուրիշի հետ չշփոթես:

Իորդանկան նկարը թաքցնելով ծոցում, քիչ շփոթված շշընջաց.

— Այո, ես վախեցա առանց նկարի Ձեզ իսկույն չճանաչեմ... Ուրեմն դուք Իրինայի պա՞պն եք...

— Այո, նա խնդրել է քեզ համբուրել իր փոխարեն,— ասաց Լուրյենը և թոռնիկի փոխարեն էլ կրկին համբուրեց Իորդանկային:

Իորդանկան մեզ ծանոթացրեց իր ծնողների հետ: Նրանք մեզ առաջարկեցին գնալ իրենց տուն: Բայց քանի որ նախ պետք է ներկայանայինք հանգստյան տուն, որոշեցինք մի ուրիշ օր այցելել նրանց:

Ես ոչինչ չէի հասկացել Լուրյենի այդ տարօրինակ թվացող հարազատությունից, քանի որ նրանք կյանքում իրար առաջին անգամ էին հանդիպում, չկարողանալով զսպել հետաքրքրությունս հարցրեցի.

— Ովքե՞ր էին դրանք...

Լուրյենը կռահեց իմ զարմանքի պատճառը, մանրամասն պատմեց իր թոռնիկի և այդ բուլղար փոքրիկ աղջկա բարեկամության մասին:

Հաջորդ օրը մենք հյուր եղանք մեր անծանոթ բարեկամներին: Մենք իմացանք, որ աղջկա հայրը աշխատում է նավահանգստում որպես բանվոր, իսկ մայրը՝ մանվածքային ֆաբրիկայում որպես ջուլհակուհի: Հետո Իորդանկան ինձ ծանոթացրեց հայ աղջիկների՝ քույրեր Վարդուհու և Ալիսայի հետ, որոնք Իորդանկայի հետ սովորում են նույն դպրոցում:

— Բա ասում էիք, թե Վառնայում հարազատներ չունեք,— կատակեց Լուրյենը:

— Հիմա կարող եմ ասել, որ ունեմ,— նայելով ընկերոջս պայծառացած դեմքին, վրա բերեցի ես:

— Իհարկե,— հաստատեց Լուրյենը:— Ա՛յ, դուք երկու աղջիկ ունեք, խորհուրդ տվեք, որ նրանք նամակներ գրեն Վարդուհուն ու Ալիսային, և դուք էլ այստեղ հարազատներ կունենաք...

Երբ Վառնայից մեկնում էինք հայրենիք, մեզ ուղեկցելու էին եկել Իորդանկան իր ծնողների հետ, Վարդուհին ու Ալիսան, իմ աղջիկների՝ Նաիրուհու և Հրաչուհու ապագա ընկերուհիները:

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԼԻՆՈՏԻՊԻԿԻ ՖԵԼԻԵՏՈՆՆԵՐԸ

*ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ*



ՖԵԼԻԵՏՈՆ ՅՈԹԵՐՈՐԴ

## ՇԱՏ ԼԱՎ ԿԼԻՆԻ

*Երկաթուղային կայարանից գործով Կիրովի գործարանի բանավան էի գնում, որոշեցի օգտվել տրամվայի նոր երկաթուղուց: Դե, իհարկե, արդեն մի քանի ամիս է, ինչ Բաքվի խճուղով տրամվայը կարճ ճանապարհով գնում է Թամանցիների փողոց:*

*Մոտեցա կանգառին: Երբ տրամվայը եկավ, ուզեցի երկրորդ վագոնի վերջին դռան աստիճաններով բարձրանալ: Հենց նույն պահին էլ նկատեցի մի տղայի ու մի աղջկա: Նրանք պայուսակներ ունեին ձեռքներին: Տղան ուզում էր բարձրանալ առջևի դռնից, իսկ աղջիկը չէր թողնում:*

*«Էհե՜, ինչպես տեսնում եմ, պետք է տպագրել նրանց զրույցը,— որոշեցի ես,— դա դաս կլինի ուրիշներին»: Ու տպագրեցի:*

*ՇՈՒՇԻԿ — Առջևի դռնից չի կարելի. Կարո, արի՛ հետևի դռնից բարձրանանք:*

*ԿԱՐՈ — Ինչի՞ է, միլիցիոներ հո չկա:*

*ՇՈՒՇԻԿ — Ուրեմն անպայման միլիցիոնե՞ր պետք է լինի, որ դու պահպանես կարգը:*

*ԿԱՐՈ — Դե լավ է՛, դու էլ՝ կարգ հա կարգ. դասից ուշանում ենք:*

*ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ — Փոքրի՛կ, առջևի դռնից բարձրանալ չի կարելի, խանգարում ես մեզ: Քեզ հետ եմ, ա՛յն կողմ գնա: Տեսե՛ք, տեսե՛ք, ես նրա հետ եմ խոսում, իսկ նա շարունակում է բարձրանալ: Երևի, նույնիսկ, պիոներ է:*

*ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ — Դե, իհարկե, պիոներ է, վզկապը երևում է վերարկուի տակից:*

*ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ — Իսկ ես, եթե նրա ջոկատա-*

վարը լինեի, իսկույն կվերցնեի այդ վզկապը նրանից: Այդպիսին արժանի չէ վզկապ կրելու:

ԼԻՆՈՏԻՊԻԿ— Շուշիկն ամաչեց Կարոյի փոխարեն ու արագ-արագ բարձրացավ հետևի դռնից: Առջևի դռնից, վերարկուի կոճակներն արձակած, մի կերպ ներս ընկավ նաև Կարոն: Հենց այդ պահին մի ծերունի արդեն պատրաստվում էր գրավել ազատ նստարանը, բայց Կարոն արագ նստեց աթոռին ու բարձրաձայն կանչեց.

Շուշիկ, ե՛կ այստեղ, ես քեզ համար էլ տեղ եմ պահել:

ՇՈՒՇԻԿ— (շշուկով) Ինչո՞ւ ես բղավում, անտառո՞ւմ ես, ինչ է, եթե բոլորն էլ քեզ նման բարձրաձայն խոսեն, ի՞նչ դուրս կգա:

ԿԱՐՈ— Դե լավ է, դու էլ ի՞նչ ես ամեն տեղ գլխիս քարոզ կարդում: Ես քեզ լավություն եմ անում, տեղ պահում, իսկ դու... (ծաղրական ձայնով) «Կարո՛, կարգ ես խանգարում, չի կարելի», «Կարո՛, փռշտալիս բերանդ ծածկիր», «Կարո՛ խոսելու ժամանակ մի՛ երգիր», «Կարո՛, հաց ուտելիս մի՛ պարիր»: Հասկացա՛, ես ոչ մի բան անելու իրավունք չունեմ: Ես արձան եմ: Մեղավորը ես եմ, ո՞վ էր ասում քեզ հետ դըպրոց գնայի, քեզ համար տեղ պահեի: Դե, նստիր, լավ:

ՇՈՒՇԻԿ— (Հեգնելով) «Նստի՛ր», իսկ պապիկը թող կանգնած մնա: Պապի՛կ, պապի՛կ, այս տեղը ազատ է, նստեք: Կարո՛, վերցրո՛ւ պայուսակդ:



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

ԾԵՐՈՒՆԻ— Շնորհակալություն, աղջիկս, շնորհակալություն: Ես իսկապես հոգնած էի:

ԼԻՆՈՏԻՊԻԿ— Լավ է, որ Կարոյի նման տղաներ ու աղջիկներ շատ քիչ կան: Դե ես, գիտեք, անտեսանելի եմ, շրջում եմ քաղաքում, տեսնում եմ բոլորին, բայց ոչ մեկը ինձ չի նկատում: Եվ այնքա՜ն լավ բաներ եմ տեսնում ես, այնքա՜ն լավ երեխաների եմ տեսնում: Ա՛յ, օրինակ, երեկ փողոցով անցնում էր մի տատիկ: Հավանաբար շուկայից էր գալիս: Ձեռքին զամբյուղ կար: Ծանր էր զամբյուղը: Քայլում էր տատիկը մի քիչ ու էլի կանգնում, էլի էր քայլում: Եվ մեկ էլ տեսնեմ դիմացից Վաղարշակն է գալիս: Ես նրան ճանաչում եմ, փոքրիկ տղա է, Ջարենցի դպրոցում է սովորում: Վաղարշակը տեսավ տատիկին, մոտեցավ, ասաց, որ ինքը կարող է օգնել նրան, որ այդպիսի զամբյուղ տանելը իր համար հասարակ մի բան է: Եվ ծեր կնոջ շնորհակալական խոսքերի ուղեկցությամբ, զամբյուղը տարավ մինչև անծանոթ տատիկենց տուն: Կարծում եք Վաղարշակը չէ՞ր շտապում, կարծում եք զամբյուղը թեթև՞ էր: Ո՛չ, ծանր էր զամբյուղը, բայց Վաղարշակը չէր ուզում դա ցույց տալ՝ տատիկին չվըշտացնելու համար:

Կամ թե ինչո՞ւ միայն Վաղարշակը: Հենց Սոնան՝ Հակոբ Հակոբյանի անվան դպրոցից: Նրանք մի հարևան ունեն: Բըժիշկ է: Նրա որդին շրջանում որպես գյուղատնտես է աշխատում: Եվ բժիշկն ահա մենակ է մնացել: Իսկ մեր Սոնան ամեն առավոտ, մինչև դասի գնալը, մաքրում, կարգի է բերում բժշկի սենյակը, վերցնում է փոշին գրքերի վրայից: Ա՛յ թե ինչպիսի աղջիկ է Սոնան:

Եվ ահա տրամվայում ես մտածեցի: Իսկ մի՞թե Կարոն չունի այնպիսի լավ ընկերներ, որոնք նրան սովորեցնեն հարգել մեծերին, իսկ եթե նա չուղղվի՝ խիստ պատժեն:

Մինչև ես մտածում էի, տրամվայը կանգ առավ: Կարոն ու Շուշիկը ցած իջան և գնացին դեպի դպրոց: Որոշ ժամանակ լուռ էին, հետո Շուշիկը հանկարծ ասաց.

ՇՈՒՇԻԿ— Կարո, ես մինչև հիմա մտածում եմ, ինչպե՞ս կզգայիր քեզ, եթե այն ծերունու փոխարեն քո հայրը լիներ, իսկ քո փոխարեն՝ մի ուրիշ տղա: Կամ թե տրամվայի առաջին դռնից իջնողը քո մայրը լիներ փոքրիկ քույրիկիդ՝ Սեդայի հետ, և նրան հրեր քեզ նման մի տղա:

ԿԱՐՈ— (Միանգամից) Ես նրա քիթ ու մռութը կջարդեի:



# ԿԱՐԾՈՒՄ ԵՔ ԹԵ ԿԱՏԱ՞Կ Է

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Այսօր ուրիշ է կարգը.
Ես եմ մաքրել հատակը։

Վա՜յ, վա՜յ, վա՜յ, վա՜յ, ի՞նչ արիք,
Սենյակ ինչո՞ւ ոտք դրիք։

Տեղներումդ քարացե՛ք,
Նորից շարժվել չփորձե՛ք։

Ջուր չխմեք՝
Կկաթի.

Հաց-մաց չուտեք՝
Կթափվի։

Լուսամուտը չբացե՛ք,
Փոշի կգա, իմացե՛ք։

Ոչ ոք ուժեղ չշնչի՛,
Թե չէ փայլը կկորչի։

Ի՜նչ է, մաքրել հատակը
Կարծում եք թե կատա՞կ է...

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

# ԱՌՎԱԿԻ ԱՓԻՆ

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ

ՆԿ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Վարդիկը յոթ տարեկան է, Սուրիկը՝ ինը։ Նրանք ամեն օր խաղում են միասին։ Այդ օրը առվի ափին էին, երբ Սուրիկն ասաց.

— Հիմա հարկավոր է լաց լինել...

Իհարկե։ Լաց լինել հարկավոր էր։ Խորտակվել էր թղթե նավակը, խեղդվել Գեղեցկուհին։ Դա նրանց տիկնիկն էր, Սուրիկն էր սարքել կավից։

Եվ իսկապես լավն էր տիկնիկը, գոնե նրանց այդպես էր թվում, թե չէ ինչո՞ւ պիտի Գեղեցկուհի դներին անունը։ Վարդիկը մոր գզրոցից վերցրել էր նախշուն կտորներ, փայլուն, մանր ուլունքներ ու զարդարել նրան, գլխին էլ կպցրել էր իր շեկ մազերից կտրած մի ոսկե խոպոպիկ։ Նրանք շատ էին սիրում տիկնիկին։

Իսկ հիմա... հիմա նա ողբերգած, մազերը գզգզված, զգեստները ցեխոտ, ձեռքերը կոտրված ընկած էր թղթե նավակի մոտ։

— Պետք է լաց լինել,— նորից է ասում Սուրիկը։

Ու տխուր-տրտում նստած են դեմ-դիմաց։ Ո՞վ պետք է սկսի։ Վարդիկը չի կարող։ Լացը չի գալիս և հետո էլ կարծում է, որ...

— Դե,— ասում է Սուրիկը,— սկըսենք։ Եվ սկսում է։ Նա կծկվում է, խեղճանում, կնճռում դեմքը ու ձայնը գցում գլուխը։ Այնպես է մղկտում, այնպիսի բաներ է ասում, տիկնիկին գովում է, ո՜նց է գովում։

Ապա հանկարծ ուշքի գալով բարկացած նայում է Վարդիկին։

— Դու ինչո՞ւ չես լալիս։

Եվ անմիջապես վայրկյան չկորցնելով շարունակում է ողբալ։

Վարդիկն ամաչում է, որ չի կարողանում Սուրիկի պես լաց լինել, գոնե մի ասեղ լիներ մատը ծակեր, կամ մի բլոճ կծեր...

Բայց ախր ինչո՞ւ, մտածում է նա, մի գուցե...

— Սուրի՛կ։

— Ի՞նչ,— հերսոտ նայում է Սուրիկը։

— Արի տանենք բժշկի...

— Խենթո՛ւկ, ի՞նչ բժիշկ, ի՞նչ բան։

Վարդիկը մի պահ լռում է, բայց նորից է ասում.

— Սուրի՛կ...

— Ի՞նչ։

— Իսկ եթե կպցնե՞նք։ Հիշո՞ւմ ես մի անգամ, որ մատը կտրվել էր, դու...

— Խենթո՛ւկ, նա մա՛րդ էր, մա՛րդ էր, հասկացի՛ր։

Ուրեմն ամեն ինչ կորած է։ Վարդիկն ասես նոր է գլխի ընկնում, թե ինչ է կատարվել, նրա աչքերը լայնանում են ինչ-որ ահավոր հայտնությունից։ Ու նայում է, նայում ջրահեղձ տիկնիկին... այլևս չի խաղա նրա հետ, չի գրկի նրան, չի խոսի նրա հետ... Հանկարծ ցնցվում են բարակ փոքրիկ ուսերը, տաք, վարար արցունքները կաթում են ցած՝ կավե սառը տիկնիկի վրա։



Մինչդեռ Սուրիկը թևքով սրբելով չոր երեսը ուզում է վեր կենալ։

— Ես պրծա,— ասում է նա։ Բայց հանկարծ ապշում է ու նստած մնում տեղում։

— Վարդի՛կ, Վարդի՛կ, ի՞նչ պատահեց։

— Խե—ե՜ղճ տիկ—նի՜կ,— հեծեծում է նա ու մատով կամաց, զգուշ շոյում է Գեղեցկուհու մազերը, կարծես վախենում է ցավ պատճառել։

— Ախր ի՞նչ է պատահել, ի՞նչ է եղել,— նորից է հարցնում Սուրիկը։



Վարդիկը զարմացած նայում է՝ «ինչպե՞ս թե՝ ինչ է պատահել»։

— Խենթո՜ւկ,— քրթմնջում է Սուրիկը, կարծես ծաղրում է, կարծես ծիծաղում է, բայց և շփոթված է այդ իսկական, այդ ջերմ արցունքներից։

— Սո՛ւս արա, սո՛ւս արա,— խնդրում է նա,— ախր լաց լինելու ի՞նչ կա։

Վարդիկն արցունքների միջից նորից է նայում նրան՝ «Սուրիկը ոչինչ չգիտե։ Ոչինչ չի հասկանում։ Նա իրենից մեծ է»։

— Սո՛ւս արա, քեզ ոսկի թել կըտամ,— շշնջում է նա։

— Ծառից խնձոր կգցեմ։

Շալակած կտանեմ ամպի ծերը...

— Գնա՛,— ճչում է Վարդիկը։

Սուրիկն այլևս չգիտե թե ինչ ասի։

— Խենթո՛ւկ,— հանկարծ բղծիծաղ է տալիս նա, ախր սուտ է, տե՛ս, հասարակ կավ է։ Ընդ՛, տե՛ս...

Եվ նա երկու մատով վերցնում է տիկնիկի պոկված թևը ու գցում ցած, նորից է վերցնում՝ նորից գցում։

Վարդիկը սարսափած նայում է, կարծես Սուրիկը մի չարագործ, մի բարբարոս լինի։

— Կավի կտոր է, հասարակ կա՛վ է,— կրկնում է նա։— Չէի՞ր կարող ինձ նման լաց լինել... Սուտի... հենց էնպես...— և կարճ բլուզի գրպանից հանելով թաշկինակը, մեկնում է նրան։

— Չէ՛... չե՛մ կարող, ճչում է նա և հրում Սուրիկի ձեռքը, որ ուզում էր աչքերը սրբել...

Սուրիկը հանկարծ մտքի մեջ է ընկնում։ Նա կախում է գլուխը և այլևս ոչինչ չի ասում։

Նրանք այլևս չէին խաղում միասին և ոչ ոք չգիտեր, թե ինչու։

# ԽԱՂԱԼԻՔ ՎԱԳՈՆԸ

ԿԱՐԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ



Արայիկը ընդհանրապես հարցասեր էր, բայց չգիտես ինչու, այդ օրը արտասովոր լռակյաց էր դարձել: Նա խաղում էր սենյակի անկյունում և գողունի հայացքներ նետում մոր վրա:

— Մայրիկ,— հարցրեց նա,— Հրաչիկը որ իր խաղալիք-վագոնը կորցնի, նրա մայրիկը կբարկանա՞...

— Այո,— մտածկոտ պատասխանեց մայրը:

— Կծեծի՞ էլ...

— Այո՛, այո՛: Ականջը կձգի:

Աշոտիկը խեղճ-խեղճ մոտեցավ մորը.

— Դու էլ ի՛մը ձգիր:

— Ինչո՞ւ,— զարմացած նրան դարձավ մայրը:

— Ե՛ս եմ կորցրել իմ վագոնը:

# ՃՈՃԸ

*ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ*



Ճոճիկ,
Ճոճիկ-ճոճիկը,
Ճոճին նստի Աչիկը.—
Թը՜ռ...
Մեկ վերև,
Մեկ ներքև...
Ճոճը ճոճվում է թեթև։
Ո՛չ,
Ես մենակ չեմ ճոճվի,
Ես մեն-մենակ չեմ ճոճվի։
Խաչիկն էլ ինձ չի՛ սիրի,
Քուչիկն էլ ինձ չի՛ սիրի՝
Արջուկն էլ ինձ չի՛ սիրի,
Ո՛չ,
Ես մենակ չեմ ճոճվի,
Ես մեն-մենակ չեմ ճոճվի։
Ճոճիկ,
Ճոճիկ-ճոճիկը,
Ճոճին նստեց Աչիկը,
Գրկին նստեց Խաչիկը,
Կողքին նստեց Քուչիկը,
Ուսին նստեց Արջուկը։
Թը՜ռ...
Մեկ վերև,
Մեկ ներքև...
Ճոճը ճոճվում է թեթև։
Թը՜ռ,
Թը՜ռ...

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*




ԼԵՆԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Երբ մորաքույրը հյուր եկավ, Նորան որոշեց անպայման նրան տանել իրենց դպրոցի ցուցահանդեսը։ Մյուս օրը նա մորաքրոջ հետ գնաց դպրոց։ Սկսեցին նայել ցուցահանդեսում դրված ձեռագործները, նկարներն ու պլաստիլինից պատրաստված մյուս աշխատանքները։ Հերթով նայում էին։ Մորաքույրը մեկին շատ էր հավանում, մյուսին մի փոքր քիչ, երրորդով հիանում էր ու ասում.

— Շատ լավն է, եթե դպրոցում չլիներ, կկարծեի, որ մեծերն են արել։

Մի ձեռագործի մոտ մորաքույրն ավելի շատ կանգնեց։ Կաշվե ձեռնոցներով երկու արջուկ իրար էին խփում։

— Տե՛ս, մորաքույր, լավ է, չէ՞։

— Այո, աղջիկս, շատ լավն է,— ասաց մորաքույրն ու առաջ գնաց։

Բոլորը նայելուց հետո, երբ ուզում էր դուրս գալ սենյակից, տեսավ Նորան կողքին չէ։ Ետ դառավ։ Սենյակի մի ծայրում կանգնել էր Նորան և ուշադիր նայում էր մի նկարի։

Մորաքույրը գնաց նրա մոտ ու ասաց.

— Ի՞նչ ես նայում։

Նորան չխոսեց։

Մորաքույրը տեսավ, որ նա նայում է արջուկներին։

— Քեզ շա՞տ է դուր եկել այդ ձեռագործը,— հարցրեց մորաքույրը,— եթե կարողանաս գործել, ես այսօր այդպիսի մի օրինակ կվերցնեմ, և դու կասեղնագործես, լա՞վ։

— Լավ, մորաքույր։

Հանկարծ մորաքույրը ավելի մոտ գնաց ու ձեռագործի տակ կարդաց Նորայի անուն-ազգանունը։

— Ահա թե ի՜նչ,— ուրախացավ նա,— ուրեմն այս լավ ձեռագործը դո՞ւ ես արել։ Դե որ այդպես է, ես քեզ համար ավելի մեծը կգնեմ, դու կասեղնագործես ինձ համար, այո՞։

— Այո, մորաքույր։

Հետո տանը մորաքույրը երկար ժամանակ պատմում էր այդ ցուցահանդեսի մասին ու ավելացնում, որ ինքը ոչ մի ցուցահանդես այնքան հաճույքով չի նայել, ինչպես Նորայենց դպրոցինը։



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Քանճածը



ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Իրիկուն էր։ Էլեկտրական ջահը վառվում էր։ Սուրիկն ու Մանուշը ընթրում էին։ Մայրիկն ասաց.

— Խելո՛ք մնացեք, մորաքույր Ժաննայի մոտ գնամ, գամ։

Մորաքույր Ժաննան նրանց հարևանն էր։

Երեխաները տանը մնացին մեն-մենակ։ Կերան-կշտացան։ Սուրիկը գլուխը բարձրացրեց, նայեց ջահին, աթոռը քաշ տալով տարավ անջատիչի մոտ ու բարձրացավ վրան։ Նա լույսը հանգցրեց, հետո վառեց, նորից հանգցրեց և այդպես անընդհատ։

Սուրիկը հպարտ-հպարտ ասում էր.

— Ուզենամ՝ լույս կլինի, ուզենամ՝ մութ կլինի։

Մանուշը խնդրում էր լացակումած.

— Մի՛ հանգցրու, վախենում եմ։

Բայց Սուրիկը շարունակում էր հանգցնել ու վառել։

Մանուշն ասաց.

— Դու չար ես, քեզ չեմ սիրի։

Սուրիկը պատասխանեց նրան.

— Չե՞ս սիրի։ Ես էլ քեզ կվախեցնեմ, կլացացնեմ։

Ասաց և լույսը հանգցրեց ավելի երկար ժամանակով։

Մանուշը բարձրաձայն լաց եղավ։

— Այդպե՛ս,— խրատական ձայնով ասաց Սուրիկը,— հիմա կսիրե՞ս, թե՞ չես սիրի։

— Կ-կսի-րե՛մ, միայն թե մի՛ հանգցրու,— ասաց Մանուշը լացի միջից և մի քանի անգամ քիթը վեր-վեր քաշեց։

Սուրիկը գոհ մնաց և ասաց.

— Այդպես... ես մեծ եմ, դու՝ փոքր ես։

Հետո լռեց և այդպես կանգնած մնաց։ Չէր ուզում իջնել աթոռի վրայից, էլ ի՞նչ անի։ Ձանձրացավ և լույսը նորից հանգցրեց։

Մանուշն աղաչական ձայնով ասաց.

— Սուրի՛կ ջան, վախենում եմ։

— Վախենում ես, հա՞, հա՛-հա՛-հա՛,— ծիծաղեց Սուրիկը,— մի քիչ սպասիր, հիմա կվառեմ։

Մանուշը կրկին աղաչեց.

— Վառի՛ր, խնդրում եմ։

Սուրիկը գոռաց.

— Չլսեցի՞ր ինչ ասացի, սպասի՛ր, է՜լի։

Հնչեց բանալու չխկոցը, և մայրիկը ներս մտավ։ Մանուշը լացն ուժեղացրեց և նետվեց մոր գիրկը։ Սուրիկը լույսը վառեց։

— Այդ ի՞նչ ես անում,— բարկացավ մայրիկը, մատը թափ տվեց Սուրիկի

վրա, հետո շոյեց հեծկլտացող Մանուշի գլուխը։

Սուրիկը համառորեն ասաց.

— Ուզենամ՝ լույս կլինի, ուզենամ՝ մութ կլինի։

Մայրիկն ավելի հանդարտ, բայց խիստ ձայնով հարցրեց.

— Ինչու՞ մութ լինի։

Որովհետև այդպես եմ ուզում,— պատասխանեց Սուրիկը։

Մայրիկն ասաց.

— Դու չար ես։ Երբ հայրիկը գա, կպատմեմ, թե ինչ արեցիր, և քեզ ոչ ոք չի սիրի։

Թող չսիրեն,— պատասխանեց Սուրիկը։ Բայց շփոթվեց և ընկճվեց։ Նա գիտեր, որ լավ չի լինի, երբ իրեն ոչ ոք չսիրի։

Մայրիկը երեխաներին պառկեցրեց քնելու։ Հետո նստեց Մանուշի մահճակալի եզրին, գուրգուրեց նրան, փաղաքշեց և ասաց.

— Իսկ դո՛ւ, Մանո՛ւշ ջան, մթից մի՛ վախենա։ Մթան մեջ ի՞նչ կա որ։ Դու պիտի քաջ լինես, որ Սուրիկը չկարողանա քեզ վախեցնել։

— Էլ չեմ վախենա, մա՛ ջան,— ասաց Մանուշը։ Մայրը քնքշորեն համբուրեց նրա այտերը։

Սուրիկը երեսը շրջել էր պատի կողմը։ Մի ականջը բարձին էր սեղմել, մյուսը ձեռքով էր փակել։ Նա նախանձում էր, չէր ուզում լսել, թե ինչպես մայրիկը քաղցր-քաղցր խոսում է Մանուշի հետ և համբուրում է նրան։ Գուցե մայրիկը ների և գա իրեն էլ համբուրի։ Սուրիկը սպասեց, երկար սպասեց, մինչև որ քունը տարավ։

Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# ԱՆՀԱՇՏ ԾԻՏԻԿՆԵՐ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Զար ու անհաշտ
Երկու ծիտիկ
Գտան մի հատ
Գարու հատիկ:

Եվ այդ չնչին
Գարու համար
Քաշքշեցին
Նրանք իրար:

— Գարին իմն է,
Ես եմ գտել.
Դրա համար
Ջուրն եմ մտել:

— Իմ ի՞նչ գործն է,
Այ անփետուր.
Գարու կեսը
Կտրիր, ինձ տուր...

Եվ ծիտիկներն
Անմիտ ու չար
Գզգզեցին
Այնքան իրար,

Թռան ծառին,
Իջան քարին,
Մինչև կորավ
Գտած գարին:

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

# ԵՍ ԳԱՐԻԿԻՆ ՉԵՄ ՍԻՐՈՒՄ



ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ՍԱՐԳԻՍ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Երեխայի տեղ է դրել ինձ Դավիթ քեռին։ Նրա հետ ոչ մի բանի մասին չեմ կարողանում լուրջ խոսել։ Ես նրան հարցնում եմ.

— Դավի՛թ քեռի, էն տան կտուրին ինչո՞ւ են երկար երկաթյա ձող տնկել... Իսկ նա պատասխանում է.

— Որպեսզի ճնճղուկները վրան թառեն։

Իսկ ես գիտեմ, որ ճնճղուկների թառի համար այդպիսի երկաթ, այդպիսի բարձր տան կտուրի վրա չեն տնկի։ Ասում եք, որտեղից գիտե՞մ... Դե, գիտեմ, է՛լի, իսկ թե որտեղի՞ց չգիտեմ։

Չէ, այդ Դավիթ քեռին ինձ բոլորովին երեխայի տեղ է դնում, ու ես նրա հետ ոչ մի անգամ չեմ կարողանում որևէ բանի մասին լուրջ խոսել։

Հենց տեսնում է ինձ թե չէ, անմիջապես այնպիսի հարցեր է տալիս, որ կարծես երեխա լինեմ, իսկ ես արդեն բավական մեծ եմ և այս տարի երկրորդ դասարան եմ փոխվել։

— Պապայիդ սիրո՞ւմ ես, — հարցնում է։

Ես գլխով եմ անում և ուզում եմ մի լուրջ բանի մասին հետը խոսել, իսկ նա նորից հարցնում է.

— Իսկ մամայի՞դ...

Ես նորից գլխով եմ անում, ու նա նորից ինձ հարցնում է.

— Իսկ Գարիկի՞ն...

Ես էլ գլխով չեմ անում։

— Ուրեմն Գարիկին չե՞ս սիրում, — նորից հարցնում է Դավիթ քեռին ու խորամանկ նայում է ինձ։

Ես չեմ պատասխանում, ուզում եմ ուրիշ բանի մասին խոսել։



— Դավիթ քեռի,— ասում եմ,— իսկ ինչո՞ւ են փողոցը այդպես քանդել։

Ես գիտեմ, թե ինչու են փողոցը քանդել։ Ո՞վ չգիտի, որ ես չիմանամ։ Փողոցը քանդել են, որ գազի խողովակները դնեն, բայց ես հարցնում եմ, որ Դավիթ քեռին ինձ գազի մասին հետաքրքիր բաներ պատմի։ Բայց նա իմ հարցին չի պատասխանում, նորից, խորամանկ ժպտալով, ասում է.

— Ես քեզ ոչինչ չեմ ասի, եթե դու իմ հարցին չպատասխանես։

Գարիկին սիրո՞ւմ ես, թե ոչ։

Ես էլ չեմ կարողանում համբերել։

— Չե՛մ սիրում,— ասում եմ։

— Ինչո՞ւ,— նորից հարցնում է Դավիթ քեռին և այնպես զարմացած է նայում, որ ես բոլորովին զղջում եմ իմ պատասխանի համար։ Բայց արդեն ուշ է. հիմա էլ չեմ կարող խոսքս ետ վերցնել ու ասում եմ.

— Ի՞նչ սիրելու տղա է Գարիկը որ...

— Իսկ ինչո՞ւ սիրելու տղա չի։

— Նա ի՞նչ եղբայր է որ։

— Իսկ ինչո՞ւ լավ եղբայր չի որ...

Ու ես սկսում եմ նրան պատմել իմ դարդերը։ Իսկ պատմելու շատ բան կա։ Ա՛յ, տեսեք, դուք էլ իմացեք։

Անցյալ օրը մայրիկը տեղ էր գնացել ու ինձ պատվիրել Գարիկին լավ հետևել։ Դե, մայրիկը գնաց, թե չէ, ես սկսեցի հետևել Գարիկին։

Գնում է պատշգամբ՝ հետևից գնում եմ, գալիս է տուն, ես նրա հետևից։ Վազում է, ես անմիջապես ասում եմ՝ «Գարիկ, վազել չի կարելի, կընկնես...» ու ես էլ հետևից եմ վազում։ Բարձրանում է թախտին, ես նրան ասում եմ՝ «Թախտին մի բարձրացիր, կընկնես»։ Ծորակից ջուր է վերցնում, որ խմի, վրան բարկանում եմ, ասում եմ, «ծորակինը սառն է, վերցրու ջրամանից»։ Շարունակ հետևում եմ ու նկատողություն անում նրան։ Ախր շարունակ անկարգություններ է անում։ Հետո ուզեց բակ իջնել խաղալու, ես էլ հետևից բակ գնացի։ Ես հո մենակ չէի՞ թողնի։ Շարունակ գժի նման վազում է, վեր-վեր թռչում։ Ախր կարող է ընկնել, մի տեղը վնասել։ Էդ բոլորը դեռ ոչինչ, նրա խաթեր կարգին կռվեցի Հրաչիկի հետ։ Մի բոպե, ազնիվ խոսք, միայն մի բոպե աչքիցս կորցրի Գարիկին, մեկ էլ լսեմ նրա լացի ձայնը։ Ես այն ժամանակ մեր դասարանցի Արուսի հետ էի խոսում։

Վազեցի Գարիկի լացի կողմը. ի՞նչ տեսնեմ։ Էդ Հրաչիկը, չի էլ ամաչում, ահագին տղա է, արդեն չորրորդ դասարան է գնում, բայց Գարիկի ձեռքից գնդակը խլել է ու ինքն է խաղում։ Գարիկը լաց լինելով վազում է նրա հետևից, իսկ Հրաչիկը միայն ծիծաղում է։

Մոտեցա, ասում եմ՝ Հրաչիկ, բա չե՞ս ամաչում, փոքրիկին նեղացնում ես։

Ասում է՝

— Քե՞զ ինչ։

— Ինչպե՞ս թե ինձ ինչ։ Իմ եղբայրն է։
— Ասու՛մ է՝ գաղլաս մի տանի։
— Ինչպես թե գաղլաս մի տանի, գնդակը տուր թող երեխան խաղա։

Նա ինձ բոլորովին բանի տեղ չի դնում։

— Ես բռնեցի Հրաչիկի թևից։ Նա՛ ինձ հրեց, հետո ես նրան հրեցի, նա ինձ ավելի ուժեղ հրեց ու ես ընկա։ Ախր, նա ինձնից երկու դասարանով մեծ է։ Ես վեր կացա հարձակվեցի նրա վրա։ Մենք սկըսեցինք միմյանց քաշքշել ու խփել։ Նա իմ քթից մի քիչ արյուն բերեց, բայց ես նրա դեմքը չանգռեցի, հետո նա ինձ նորից հրեց ու գցեց, իսկ ինքը՝ փախավ։

«Հիմա մայրիկը կգա ու կտեսնի, որ ես կռիվ եմ արել ու վա՜յ ինձ,— մտածեցի։ Ես ինչպե՞ս նրա հախից եկա։ Եվ երեսդ լվամ, որ մայրիկը ոչինչ չիմանա»։

Գարիկի՞ն, ի՞նչ սիրելու բան է, որ սիրեմ, նրա պատճառով ինչ անախորժություն ասես պատահում է։ Ա՛յ, անցյալ օրը մայրիկը խոհանոցում գործ էր անում, իսկ ես ու Գարիկը մեծ սենյակումն էինք։ Ես նկարում էի։ Գարիկն էր խնդրել, որ իր համար շուն նկարեմ։ Բայց մի դրա՛ն տեսեք։ Ես նրա համար չարչարվում եմ, իսկ նա, փոխանակ կողքս խելոք նստելու, սենյակում վազվզում ու իր քեֆին անկարգություններ է անում, մեկ էլ դիպավ ծաղկամանին ու ցած գցեց-կոտրեց։

Մայրիկը աղմուկի վրա ներս մտավ։

— Այս ո՞վ է արել,— բարկացավ նա։



Գարիկին վերցրի, գնացինք տուն։ Ես շտապ սկսեցի լվացվել, հետո նայեցի, տեսա՝ Գարիկը լաց եղած աչքերով այնքան խղճալի տեսք ուներ, դեմքն էլ ամբողջովին ցեխոտվել էր, գրկեցի, համբուրեցի, ասում եմ՝ «Ոչինչ, Գարի՛կ, տեսնո՞ւմ ես,

Ես վախեցա, որ նա կարող է սաստիկ պատժել Գարիկին ու վախից ասացի, որ ես եմ արել։ Մայրիկն ինձ այդ օրը զրկեց Լևիկի հետ կինո գնալուց։ Դեռ նախորդ օրն էի խնդրել, ու մայրիկն էլ խոստացել էր թողնել։

Էդ էր պակաս, որ Գարիկին սիրեմ, նրա ի՞նչը սիրեմ, նրա խաղեր ես ինչքան եմ տուժել...

Ո՞ր մեկը հիշեմ...

Ես, իհարկե, այս բոլորը Դավիթ քեռուն չպատմեցի, այլ միայն ասացի, որ Գարիկին չեմ սիրում, քանի որ նա անկարգ է, չար, հիմար է ու նրա հետ նույնիսկ շաշկի խաղալ չի լինում: Զահլաս գնացել է, էնքան եմ Գարիկին սովորեցրել շաշկի խաղալու օրենքները, բայց մինչև հիմա կարգին չի էլ սովորել ու շարունակ սխալներ է թույլ տալիս:

— Դե, հիմա, Դավի՛թ քեռի,— ասացի ես նրան,— պատմիր, թե ինչո՞ւ են փորփրել փողոցը:

Բայց այդ ժամանակ հայրիկը տուն եկավ և Դավիթ քեռուն ուրախ-ուրախ բարևելուց հետո, ինձ ասաց.

— Իսկ հիմա Գարիկի հետ գնացեք խաղալու: Ես ու Դավիթ քեռին գործ ունենք:

Մենք դուրս եկանք և այդպես էլ Դավիթ քեռին չպատմեց, թե ինչո՞ւ են փորփրել փողոցը:

Զարմանալի մարդ է այդ Դավիթ քեռին, նրա հետ ոչ մի բանի մասին չի հաջողվում լուրջ խոսել: Ճիշտ է, առանց նրա ասելու էլ, ես լավ գիտեմ. փողոցը փորփրում են, որ գազի խողովակները դնեն, գիտեմ, բայց հարցրի, որ նա գազի մասին հետաքրքիր բաներ պատմի:

Էհ, ի՞նչ արած, թող մնա, մի ուրիշ անգամ:

# ԱՐԵՎԻ հյուրը

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Ճուտիկը ժիր ելավ քնից
Ու դուրս վազեց տաքուկ բնից
Նայեց չորս կողմ՝ և՛ վեր, և՛ վար:
Շուրջը մութ էր, ցուրտ ու խավար:
— Վա՜յ, արևը քնով ընկել,
Մի տե՛ս, այսօր դուրս չի եկել,
Գնամ,— ասաց,— ձայն տամ ելնի,
Բակ ու փողոց թող լույս անի:
Գլխարկ դրեց,
Կոշիկ հագավ,
Կոշիկ հագավ,
Ճամփա ընկավ:
Ծիտը հեռվից հենց որ տեսավ,
Թևին տվեց, նրան հասավ,
— Ա՛յ իմ պստիկ, սիրուն ճուտիկ,
Ու՞ր ես գնում տոտիկ-տոտիկ:



— Բա չգիտե՞ս, քնով ընկել,
Արևը մեր դուրս չի եկել։
Գնամ, ծայն տամ, քնից ելնի,
Բակ ու փողոց թող լույս անի։
— Ոտքով, Նուտիկ, չես հասնի, չէ՛ս,
Պիտի թևով, թևով թռչես,
Ա՛յ, ես ունեմ ուժեղ թևեր,
Նստիր մեջքիս, տանեմ քեզ վեր։
Ու Նուտիկին
Մեջքին առավ,
Հեռու թռավ։
Արագիլը հենց որ տեսավ,
Թևին տվեց, նրանց հասավ
Ու հարցրեց.—Մութուլուսին
Ո՞ւր եք գնում դուք միասին։
— Բա չգիտե՞ս, քնով ընկել,
Արևը մեր դուրս չի եկել.
Գնանք, ծայն տանք, քնից ելնի,
Բակ ու փողոց թող լույս անի։
— Այդպես, թևով, չեք հասնի, չէ՛ք,
Ուղղաթիռով պիտի թռչեք,
Եկեք, եկեք ես ծեզ տանեմ,
Հեռո՜ւ, հեռո՜ւ երկինք հանեմ։
Ուղղաթիռը
Ցած բերեցին,
Ցած բերեցին,
Ու նախրեցին։
Բազեն հեռվից հենց որ տեսավ.



Թևին տվեց նրանց հասավ
Ու հարցրեց.—Մութուլուսին
Ո՞ւր եք գնում դուք միասին։
— Բա չգիտե՞ս, քնով ընկել,
Արևը մեր դուրս չի եկել.
Գնանք, ծայն տանք, քնից ելնի,
Բակ ու փողոց թող լույս անի։
— Ուղղաթիռով չեք հասնի, չէ՛ք,
Օդանավով պիտի թռչեք,
Ա՛յ, իմ հզոր օդանավով
Դուք կթռչեք շատ ապահով։

Օդանավում
Տեղ բռնեցին,
Տեղ բռնեցին,
Սավառնեցին։
Արծիվն հեռվից հենց որ տեսավ,
Թևին տվեց, նրանց հասավ
Ու հարցրեց.—Այդպես խմբով
Ու՞ր եք գնում դուք շտապով։
— Բա չգիտե՞ս, քնով ընկել,
Արևը մեր դուրս չի եկել,
Գնանք, ձայն տանք, քնից ելնի,
Բակ ու փողոց թող լույս անի։
— Օդանավով չեք հասնի, չե՛ք,
Դուք հրթիռով պիտի թռչեք։
Նա կնեղքի երկինքն ամպոտ,
Ձեզ կտանի արևի մոտ։

Հրթիռ նստած
Վեր բարձրացան,
Վեր բարձրացան,
Ու սլացան։
Շատ գնացին, երկինք հասան,
Ադամանդե մի տուն տեսան,
Ներս նայեցին՝ ճերմա՜կ, ճերմա՜կ,
Վրան քաշած ամպե վերմակ,
Դեմքին ժպիտ անու՜շ, անու՜շ,
Արեգակն էր քնած մուշ-մուշ։
Դուռ լուսամուտ պինդ ծեծեցին,
Այսպես նրան ձայն տվեցին
— Արև՛, արև՛, քնով ընկել,
Մինչև հիմա դուրս չես եկել,
Մութ է, մութ է այնտեղ ցածում,
Թե՛ մեր բակում, թե՛ փողոցում...
Ու իր բարձին ոսկեփետուր
Բացեց արևն աչքերը հուր,
Ելավ քնից, լույսը բացվեց,
Լույսը բացվեց, աշխարհ լցվեց։
Ժպտաց ծովը ջինջ, կապուտակ,
Լինը փայլեց արևի տակ,
Հովը փչեց, խոտը շրշաց,
Թավ անտառը ուրախ խշշաց։
Չորս կողմը հուր, արևի բոց,
Լույսով լցվեց տուն ու փողոց,
Եվ բոլորը ուրախացան,
Ուրախացան ու տուն դարձան։

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*



**Տրվում է անվճար՝ «Պիոների» 6-րդ համարի հետ։**

ՇՈՒՇԻԿ— Իսկապես արժեր, որ մեկն ու մեկը ջարդեր քո քիթն ու մռութը: Բայց չի կարելի: Դրա համար էլ ես այսօր կխնդրեմ, որ քո հարցը քննեն ջոկատխորհրդի նիստում ու կպատմեմ ամեն, ամեն ինչ: Ի՞նչ ընկեր ես դու: Դու մեզ էլ ես խայտառակում:

Եվ Շուշիկը արագ քայլերով հեռացավ:

ԿԱՐՈ— (խեղճացած) Դե արի սրանից հետո սրան լավություն արա: (Կանչում է Շուշիկի հետևից) Շուշի՛կ, Շուշի՛կ...

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Ա՛յ, ինչ եմ ասել, այդպես էլ պետք է: Բարկությունից քիչ էր մնում ես էլ միջամտեի խոսակցությանը և իմ անտեսանելի լինելը ակամա հայտնեի: Բայց երբ Շուշիկը խոսեց՝ հանգստացա: Եթե բոլորն էլ նրա նման ամեն քայլափոխում տեղն ու տեղը ճշմարտությունն ասեն Կարոյի նմաններին, ոչ թե հոհռան նրանց հիմարություններն ու անկարգություններն տեսնելով, այլ զայրանան, դա շա՜տ, շա՜տ լավ կլինի:

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ



# ՀՈՒՇԱՐԱՐՆ ՈՒ ԱԶԱՏԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Դաս են հարցնում ծույլ Ազատին,
Կանգնում է նա՝ աչքը պատին,
Ու չգիտես բա՞ն է խոսում,
Թե՞ ականջով ձայն է որսում:
Նրա կողքին մտած դարան,
Փսփսում է հուշող Արան.
— Ասա զորքը հասավ Տարոն.
— Ահա նորքը, ասավ Կարոն:
Եվ հուշում է նորից Արան.
— Այստեղ եղավ ճակատամարտ:
Եվ ասում է նա անվարան.
— Ասեղ, լեղակ, ճակատ ու մատ:
Ողջ դասարանն է ծիծաղում
Ու զարմանքով նայում նրան,
Բայց ականջն է նորից կախում,
Որ օգնության հասնի Արան:
— Ասա հետո դաշտի վրա
Հոսեց արյան կարմիր մի գետ...
Եվ ասում է.— Տաշտի վրա
Խոսեց Արան Ամիկի հետ:
— Ասա մարտում անհեղ ու մեծ
Քաջեր ընկան կորովածին:
Ասաց.— Արտոն անմեղ նայեց,
Աչքերն ընկան խորովածին:
Լսեց՝ սամում, ասաց՝ խանում,
Հուշեց՝ բանակ, լսեց՝ չանաք,
Ու երկուսով դասարանում
Դարձան այսպես ծաղր ու ծանակ:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



## ԾԻԱԾԱՆ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Հորիզոնն է այնպես մթնել,
Պաղ անձրև է տեղում մեղմիկ.
Հովանոցը գլխին՝ մեկ էլ
Անցնում է մի փոքրիկ աղջիկ:

Քայլում է ու ժպտում ուրախ՝
Փոքրիկ աղջիկն հովանոցով.
Ծիածանն է ասես չքնաղ
Քայլում այսօր մեր փողոցով:

Վառ ծաղկունքից հյուսված սիրուն
Մի ծաղկեփունջ ասես լինի.
Անցորդների սիրտն է ցնծում
Ծիածանից յոթգույնանի:

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ԸՆԿԱԾ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Գետի մեջ ընկած էր արմատախիլ եղած մի ծառ: Ջո՞ւրն էր բերել, թե՞ հողմերն էին տեղահան արել ու ջուրը նետել: Ի՛նչ իմանաս: Ծառն ընկած էր, և գետի ալիքները գիշեր ու ցերեկ պոկում, ջարդում էին նրա ճյուղերը, լվանում արմատները, քշում տանում տակի ավազն ու հողը:

Ես ամեն օր որսի գնալիս անցնում էի այդ ծառի մոտով: Երբ գարունը գալիս էր, նրա ճյուղերը կանաչում էին: Աշնանը դեղնում էին, տերևաթափ էր սկսվում, ճիշտ այնպես, ինչպես կանգնած ծառերը: Ձմռանը, երբ գետը սառչում էր, ես հաճախ նստում էի նրա բնին հանգստանալու:

Սիրում էի այդ ծառը, եթե այսպես կարելի է ասել, սիրում էի տարվա բոլոր եղանակներին: Ես տեսել էի, թե ինչպես բուքը ձյուն էր կուտակում նրա վրա, թե ինչպես քամին թափահարում էր ճյուղերը: Ես շատ անգամ էի տեսել կատաղած ալիքների մեջ դողդողացող ծառը: Երբ արևն իջնում էր, և տայգան մթնում, ընկած ծառը տարօրինակ ձևեր էր ստանում, ապա մուգ շագանակագույն ստվերի նման ձուլվում էր ջրերին: Բայց այն, ինչ որ տեսա այդ տարվա աշնանամուտին, ինձ շատ զարմացրեց:

Որսի էի գնում: Թռչունների չուն արդեն սկսվել էր: Աշունը շատ կարճ է այստեղ, երկու շաբաթվա ընթացքում ամեն ինչ փոխվում է. ծառերը մերկանում են, մամուռը կծկվում, ջրերը սառում. ձմեռ է գալիս: Բայց այս կարճ ու շտապ աշունը լիքն է հույզերով ու արկածներով: Մենք սովոր էինք այդ շտապողականությանը և ոչ մի վայրկյան չէինք վրիպում: Գիշեր ու ցերեկ՝ բնության գրկում, նրա հետ էինք:

Այդ օրը արև չկար: Դեռ առավոտից օդը լիքն էր խոնավությամբ, տայգան մոխրագույն. գորշ ստվերներով էր լցված, լուռ էր. թվում էր, թե անձրև է գալու: Ես անցա ինձ վաղուց ծանոթ արահետով ու քայլերս ուղղեցի դեպի ընկած ծառը: Զարմանալի բան. ծառի դեղնած ճյուղերի միջև լողում էր մի փասյանաբադ: Նա նստած էր ջրի երեսին և, ձկնորսի կարթի վրա ամրացված խցանի նման, օրորվում էր ալիքների հետ: Ես հրացանս իջեցրի, որովհետև տեղը բաց էր, պառկեցի ու սկսեցի սողալով մոտենալ որսին: Փասյանաբադը հանգիստ էր: Երբ այնքան մոտեցա, որ կարող էի կրակել, բադը նկատեց ինձ, գլուխը բարձրացրեց, նայեց, բայց թռչելու փորձ չարեց: Այս

# Ծառը

Անսպասելի դեպքը ստիպեց ինձ ավելի մոտենալ: Ես բարձրացա, համակոծս մեկ քայլեցի դեպի նա և այնքան մոտեցա, որ այլևս կրակել չէր կարելի: Փասյանաբադն անտարբեր էր: «Ի՞նչ է պատահել, սա ի՞նչ բան է,—անցավ մտքովս,—ինչու՞ օդ չի բարձրանում»: Բադը հանկարծ թեքվեց իմ կողմը, և ես պարզ տեսա նրա պարզ, կանաչ աչքերը: Եթե մեր միջև չլինեին կատաղի ալիքները, ես նրան ձեռքով կբռնեի: Բադը նայում էր ինձ անթարթ աչքերով, հանգիստ ու վստահ վեհությամբ: Ակամայից հիշեցի տատիս հեքիաթները:

Լինում է, չի լինում, որդի՛ ջան, մի որսորդ է լինում: Էս որսորդն ամեն օր որսի է գնում: Մի օր դատարկ է վերադառնում, մի օր լիքը, և միշտ էլ գոհ է լինում իր վիճակից: Մի անգամ էլ, էսպես որսի գնալիս, մի եղնիկ է դուրս պրծնում թփուտներից, մի փոքրիկ, կաթնակեր եղնիկ: Որսորդը հրացանն իջեցնում է ուսից, նշան բռնում փոքրիկ եղնիկին, որ կրակի, հանկարծ դուրս է թռչում փոքրիկի մայրը և մարդկային ձայնով ասում.

— Ջագիս մի՛ խփիր, ո՛վ քաջ որսորդ. նա դեռ շատ փոքր է. նա չի հասկանում, որ քեզնից պետք է փախչի...

Հիշեցի տատիս պատմածը, և սիրտս մեղմացավ: Հրացանս թողի գետի ափին, շորերս հանեցի ու ջուրը մտա: Բադն առաջվա նման նայում էր ինձ ու տեղից չէր շարժվում, իսկ երբ բռնեցի նրա թևից, նա միայն գլուխը թեքեց, և աչքերի մեջ թմրություն նկատվեց: Ես երկու ձեռքով վերցրի, որպեսզի բարձրացնեմ, և այդ ժամանակ միայն զգացի նրա փոքրիկ սրտի տագնապալի խփոցը: Փորձեցի բարձրացնել, բայց նա չբարձրացավ տեղից: Մարմնովս սարսուռ անցավ. չգիտեմ, ջրի սառնությունի՞ց էր, թե տատիս պատմած հեքիաթներից, քիչ էր մնում թողնեի ու դուրս գայի ջրից, բայց հանկարծ, երբ ջրի ալիքները կատաղությամբ ճողփացին, փրփրեցին և շառաչելով իմ մերկ սրունքների մոտ, ետ նետվեցին, ես տեսա, թե ինչպես էր բադի ոտքը մնացել ծառի ճյուղերից մեկի ճեղքվածքում: Ծառը բռնել էր նրան, երբ նա լողալով անցնելիս էր եղել ծառի մոտով: Ամեն ինչ պարզ էր արդեն: Ես ազատեցի բադի ոտքը ծառի ճեղքվածքից: Ջուրը տարավ բադին: Բադը գլուխը թեքած նայում էր ինձ ու հեռանում ջրի հետ: Նա այդպես էլ գնաց ջրի հետ, դեպի Տանգարա լճակը: Տանգարա լճակի վրա պտտվում էր բադերի երամը:





# ԾՈՎԸ, ԿԱՊՈՒՅՏ ԾՈՎԸ...

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ*

Բաթումիի երեխաները հատկապես սիրում են ամռան օրերը: Ինչքան էլ շոգը գրոհի, էլի նրանք չեն վախենում. ծովը վահանի պես կանգնում է ամռան կեզի դեմ։ Բայց միայն փոքրիկ բաթումցիներին չէ, որ ուրախության ու զվարճանքի պահեր է բերում ամառը։ Իրենց ծնողների հետ Սև ծովի ափ հանգստանալու են գալիս նաև պատանի երևանցիներ, մոսկվացիներ, Կիևից, հեռավոր Տայգայից, Աշխաբադից...

Ահա մի փոքրիկ տղա հոր ձեռքից բռնած մոտենում է ափին։ Ճիշտ է, տղան գրքերում շատ է կարդացել ծովերի ու նավահանգիստների մասին, բայց իր կյանքում առաջին անգամ է տեսնում ծովը։ Դրա համար է նա հրապուրված դիտում ջրի վրա թափառող նավակների խաղը, մոտորային նավերի մրցությունը, կառամատույցին ու ծովեզրին փռված ուրախ բազմությունը։ Հսկայական, անեզր թվացող ծովը նրա աչքին պատկերացավ անսահման մի հրապարակ, բայց այնպիսի մեծ հրապարակ, որն իր մեջ կարող է տեղավորել ոչ միայն Երևանն ու Սևանը միասին վերցրած, այլև Մոսկվան, նույնիսկ ամբողջ Հայաստանը։ Եվ նրան թվաց, թե ընկել է հեքիաթային մի աշխարհ, ծովերի թագավորությունը։

Տեսնելով նավակների մեջ նստած իր հասակի տղաներին, ինքն էլ խնդրեց հորը.

— Հայրի՛կ, մենք էլ չնստե՞նք նավակ։

— Նստե՛նք, տղա՛ս։

Հայրը նավակը վերցրեց, տղային նստեցրեց իր դիմաց և սկսեց թիավարել։

Տղան որոշ ժամանակ լուռ էր։ Նրան կախարդել էր շրջապատի հմայքը. ծովը ոսկեզօծած արևի գունդը, երկնքով իրենց նավակին ուղեկցող ճերմակ ամպերը և հեռվում կանաչ այգիների մեջ գեղեցիկ թիկն տված Բաթումի քաղաքը։

Որքա՜ն սքանչելի տեսարան...

Նա մեկ-մեկ ձեռքը կախում էր ջրի մեջ, ափով ջուր վերցնում ու ցողում արևի շողերի վրա։

Երբ նրանք բավակա՛ն հեռացան ափից, տղան ասաց հորը.

— Հայրի՛կ, դու արդեն հոգնել ես, տուր մի քիչ էլ ես թիավարեմ։

Հայրը չմերժեց, ու նրանք տեղները փոխեցին։ Տղան այնքան էլ վատ չէր թիավարում։

— Որտե՞ղ ես սովորել։

— Անցյալ ամառ, պապիկենց գյուղում։ Նավակներ էի սարքում ու նետում ջուրը։ Տեսնեիր ո՜նց էին լճակի գորտերը սարսափահար փախչում։

— Ուրեմն դու կարգին թիավարելու փորձ ունես,— ծիծաղե՜ց հայրը։

Ամբողջ մի ամիս այսպես ուրախ անցան օրերը Սև ծովի ափին։

— Նավապետ Գրանտ, ի՞նչ պետք է անես առանց ծովի, երբ վերադառնանք,— մի անգամ կատակեց հայրը։

Տղան չպատասխանեց, բայց նրան շատ դուր եկան հոր խոսքերը։ «Նավապետ Գրանտ...» Չէ՞ որ հայրն իրեն համեմատել էր այնպիսի մի մարդու հետ, որի հանրահռչակ անունը գիտեն աշխարհի բոլոր պատանիները։ Այդ մականունը վաստակած փոքրիկ Լևոնը վերադարձավ ծովափից։

* * *

Սենյակում լռություն է. բոլորը քնած են։ Մայրիկը, որ սովորաբար բոլորից ուշ է քնում, արդեն մարեց խոհանոցի լույսը և մտավ ննջարան։ Արթուն է միայն տան ամենափոքրիկը՝ Լևոնը։ Երազկոտ պատանուն մտքերը հանգիստ չեն տալիս։ Ընդամենը մի շաբաթ առաջ է հրաժեշտ տվել ծովին, բայց ամեն օր, երբ քնում են բոլորը, նա «գողտուկ» մի քանի պտույտ է անում ծովի վրա։ Մահճակալը նրա աչքին նավակ է թվում, սենյակը՝ ծով, առաստաղը՝ երկինք։

— Դեռ չե՞ս քնել, տղաս,— նկատում է մայրը։

— Քնած եմ, մայրիկ,— ինքնաբերաբար պատասխանում է նա։

... Լևոնը ընդունվեց Երևանի պիոներների և դպրոցականների պալատի պատանի նավաշինարարների խմբակը։ Այստեղ նա ծանոթացավ ռուս մեծ ծովակալներ Նախիմովի և Ուշակովի կյանքին, առաջին նավաշինական գործերին ու նավերի տեսակներին։ Նրա առաջին փորձերը դիտելուց հետո խմբակավարը քաջալերեց։

— Համարձակ ես ու համբերատար։ Դրանք շատ կարևոր հատկություններ են ամեն մի աշխատանք սկսելիս։

* * *

1956 թվական...

Երևանում տեղի ունեցավ պատանի նավաշինարարների ռեսպուբլիկական մրցությունը։ Լևոն Քարամյանը իր «Հաղթանակ» նավի մոդելով շահեց երկրորդ տեղը։ Դա փոքր հաջողություն չէր։ Նույն տարվա ամռանը Լևոնին ուղարկեցին Լենինգրադ՝ մասնակցելու պատանի նավաշինարարների համամիութենական մրցումներին։

Լենինգրադի Ս. Մ. Կիրովի անվան զբոսայգին սովորականից մարդաշատ է։ Լճի վրա մոդելիստների ուժեղ մրցություն է գնում։ Այստեղ էլ Լևոնը հիացրեց բոլորին։ Պատանու հաջողությամբ ուրախացան ծնողները, պիոներների պալատում, Երևանի Ջերժինսկու անվան դպրոցում։

Լևոնը դրանից չմեծամտացավ։ Նա գիտեր, որ ամեն ինչ դեռ առջևում է, որ ինքը դեռ ծովի ափին է։

* * *

Նորից ստուգատես է. պատանի մոդելիստները ցուցադրում են իրենց շնորհքը։ Լևոնը եկել է իր նոր պատրաստած «Սուզանավով»։ Բայց նավակը հենց առաջին պահից քննություն չբռնեց։ Կամակոր բադիկի նման միայն մի անգամ գլուխը թաքցրեց ջրի տակ ու տաշեղի նման ընկավ ջրի երեսը։

— Բարեկամս, հաշվումները սխալ ես արել,— ասացին նրան։

Հուսահատվե՞լ, թողնե՞լ... Ո՛չ, ո՛չ Լևոնը դա չի անի։ Միշտ չէ, որ ծովը խաղաղ է, ու նավը անվրեպ հասնում է ափ։ Միշտ չէ, որ երազանքն անմիջապես դառնում է իրականություն։ Ծովերում փոթորիկներ կան, կյանքում՝ դժվարություններ...

Հաստոցի մոտ թիթեղներ, ռանդա, սղոց, մուրճ մեխեր։ Պատից կախված մի գծագիր։ Լարված ու ոգևորված աշխատում է պատանին։ Նա չափումներ է անում, տաշում, հղկում թիթեղը։

— Այս մոդելը նման չի լինելու իմ նախորդ մոդելներից ոչ մեկին,— ասում է Լևոնը։— Սա ավելի բարդ ու նուրբ աշխատանք է պահանջում։ Ամբողջ կորպուսը պատել եմ բարակ մառլայով, սոսնձել, որպեսզի ոչ մի կաթիլ ջուր չթափանցի ներս։ Նախատեսել եմ լողավազան, բուֆետ, ննջարան, էլեկտրակայան, հեռախոս։ Մոդելը «ականակիր» է և իր բարդ սարքավորումներով կարող է պատիվ բերել ամեն մոդելիստի։

— Սա արդեն լուրջ քննություն կլինի,— ասում է խմբավարը։— Բոլորովին ինքնուրույն աշխատանք, որ հղացել է Լևոնը։ Ամենակարևորն այն է, որ չափումներն այս անգամ ճիշտ են։

Ամառը, երբ նորից շոգը՝ ծիրանին առած, այցելի պատանի երևանցիներին, Լևոն Քարամյանը իր հսկայական «ականակիր» մոդելի հետ կմեկնի Լենինգրադ՝ մասնակցելու պատանի մոդելիստների համամիութենական սպարտակիադային։ Այդ արագաշարժ ականակիրը նոր ուրախություն ու հաղթանակ կբերի Լևոնին։

Նրա հասակակից շատ երեխաներ միաժամանակ ուզում են դառնալ բժիշկ, երաժիշտ, նկարիչ։ Իսկ Լևոնը որոշել է դառնալ միայն մեկը՝ ինժեներ, այն էլ ոչ սովորական ինժեներ, այլ գյուտարար, նավեր կառուցող ինժեներ։

— Իմ երազանքը ծովն է, կապույտ ծովը...— ասաց Լևոնը զրույցի վերջում։

— Հաջողություն, Լևոն, թող միշտ խաղաղ լինի ծովը, փոթորիկ չտեսնես...



Խիզախ պիոներներ

# Վզկապավորը

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ

Հայրենի քաղաքի հերոսական անցյալին ծանոթանալու նպատակով, Գրոդնոյի № 7 դպրոցի պիոներական մի օղակ որոշեց իր հերթական հավաքույթն անցկացնել պատմության թանգարանում:

Մեծ ու լուսավոր սրահներում պատանի լենինյանները հետաքրքրությամբ դիտում էին Հայրենական Մեծ պատերազմի նյութերը՝ նկարներ, թռուցիկներ, զենքերի տեսակներ, հրամաններ ու տեղականքներ, որոնք պատմում էին ռազմաճակատի և թիկունքի մարդկանց հայրենասիրական սխրագործությունների մասին:

Հերթական ցուցափեղկի վրա, մեծ խնամքով՝ կախված էր սովորական մի կարմիր վզկապ, որն արդեն խունացել, համարյա փոխել էր իր իսկական գույնը:

Վլադիկ, իսկ ի՞նչ կապ ունի այս ամենի հետ պիոներական վզկապը,— մոտենալով օղակավարին, հարցրեց Ֆեդյան:

Պիոներներն սկսեցին զանազան դատողություններ անել: Լսելով նրանց վեճը, թանգարանի աշխատակցուհին պատմեց հետևյալը.

Երեխաներ, այս կարմիր վզկապը, որ գրավեց ձեր ուշադրությունը, մի ժամանակ կրել է Լիդիա Վաշկևիչը, երբ ձեզ նման պիոներ էր և սովորում էր մեր քաղաքի № 7 դպրոցում:

Մեր դպրոցո՞ւմ,— համարյա միաբերան հարցրեցին երեխաները:

— Այո, նա ձեր դպրոցի առաջավոր աշակերտուհիներից էր: Լիդիան այնքան էր սիրում իր կարմիր վզկապը, որ նրանից չբաժանվեց նույնիսկ այն ժամանակ, երբ մեր քաղաքը ներխուժեցին ֆաշիստական հորդաները: Թշնամու աչքից թաքցնելու համար, Լիդիան վզկապը կրում էր վերնաշապկի տակ: Այն ուժ ու եռանդ էր ներշնչում հայրենասեր աղջըկան, երբ նա պարտիզանների համար անտառ էր փոխադրում զենք, դեղորայք, թուղթ և շատ արժեքավոր տեղեկություններ՝ թշնամու գործողությունների մասին: Ֆաշիստների մտքով անգամ չէր կարող անցնել, որ վտիտ մարմնով, ոտաբոբիկ ու կիսամերկ այդ աղջիկը, իր մուրացկանի պայուսակով հաճախ պայթուցիկ նյութեր էր փոխադրում, որով պարտիզանները խորտակում էին կամուրջները ու ֆաշիստական բանակի բեռնավորված գնացքները: Երեխաների հայացքներն ակամա ուղղվեցին մանկական ծերքերով կարված բրեզենտյա պայուսակի վրա, որը կախված էր կարմիր վզկապի կողքին:— Իսկ այս տեղեկանքը,— ցույց տալով կապտավուն թղթի մի կտոր, ասաց էկսկուրսավարուհին,— գրել է մեր անտառներում գործող, Ալեքսանդր Մատրոսովի անվան պարտիզանական ջոկատի հրամանատարը:

Մոտենալով ցուցափեղկին, երեխաները կարդացին.

«Գրոդնո քաղաքի պիոներ Լիդիա Վաշկևիչը մեր պարտիզանական ջոկատի փորձված ու քաջ հետախույզներից էր, որին բոլորը սիրում ու հարգում էին»:

Լիդիայի 12 տարին նոր էր լրացել, երբ անձնվեր աշխատանքի համար, նրան պարգևատրեցին «Հայրենական պատերազմի պարտիզանին» առաջին աստիճանի մեդալով:

— Այ քեզ իսկական հերոս, դառնալով ընկերներին, ասաց օղակավարը:— Մենք այդ մասին կպատմենք բոլոր աշակերտներին և պիոներական սենյակում հատուկ անկյուն կկազմակերպենք, չէ՞ որ նա եղել է մեր դպրոցի աշակերտուհին:

Պիոներները վառ տպավորություններով հեռացան թանգարանից:

Մի օր էլ, երբ դասերը վերջացան, ջոկատի խորհրդի նա-



խագահ Թամարա Շիշլոն մեծ հանդիսավորությամբ հայտարարեց, որ իրենց առաջիկա ջոկատային հավաքույթին մասնակցելու է մանկավարժական ինստիտուտի ուսանողուհի Լիդիա Վաշկևիչը, որը նշանակված է 6-րդ դասարանի ջոկատավար:

Երեխաների ուրախությանը չափ ու սահման չկար:

Մի քանի օր հետո, կոմերիտուհի Լիդիան դասղեկի ուղեկցությամբ մտավ դասարան:

Լիդիա Վաշկևիչը ջերմորեն ողջունեց աշակերտներին, և շուտով սկսվեց մտերիմ ու անկաշկանդ զրույցը, կարծես նա այստեղ շատ անգամ էր եղել և հին բարեկամների էր հանդիպել: Լիդիա Միխայլովնան պիոներների խնդրանքով հետաքրքիր դիպվածներ պատմեց իր կյանքից, ահա նրանցից մեկը:

— Մի օր տեղեկություն ստացանք, որ ֆաշիստները որոշել են բռնել նրանց, ովքեր պարտիզաններին թռուցիկների և կոչերի համար թուղթ են մատակարարում: Դրա համար նրանք սկսեցին թուղթ վաճառել միայն մի խանութում, որպեսզի բռնեն նրան, ով շատ թուղթ կգնի:

Այդ որոշման մասին մենք հայտնեցինք պիոներներին, ասելով, որ ամեն մի պիոներ պետք է գնի 1–3 թերթ թուղթ:

Ֆաշիստները այդպես էլ չկարողացան գլխի ընկնել, թե ովքեր են պարտիզաններին թուղթ մատակարարում: Իսկ երեկոյան, ես դուրս եկա քաղաքից և թղթի կապոցը հասցրի պայմանավորված վայրը:

Պիոներները շատ գոհ մնացին այդ օրվա հավաքույթից և նրանցից յուրաքանչյուրը մտածում էր իրենց ջոկատավարի մասին, որի կարմիր վզկապը երկար տարիներ կմնա թանգարանում:

# Սարդն ու Մեղուն



ՀԱՅԿԱԶ ՄԵԼՅԱՆ

Սարդն ու մեղուն մի ժամանակ
Ապրում էին նույն հարկի տակ:
Խոստացել էր սարդը մեղվին,
Հսկել տանը և թե մեղրին
Ու չթողնել, որ թալանեն,
Գող, ավազակ մեղր տանեն:
Հենց ելնում էր մեղուն բնից,
Արթնանում էր սարդը քնից,
Գալիս էր և սարդի քեռին՝
Գիժ մոծակը սազը ձեռին,
Երգում էին, պարում մեկտեղ,
Ապա լափում մեղրը հյութեղ:
Մեղուն սարդին ասաց. «Անկո՛ւշտ,
Մենք կմեռնենք սովից անշուշտ:
Շուտով պիտի ձմեռը գա,
Բայց փեթակում մեղր չկա»:
Իսկ սարդը թե զուր չհուզվես,
Ա՛յ, կգործեմ մի շալ քեզ,
Ձմռանը դու վրադ գցիր,
Էլ չես մրսի, ազատ շրջիր:
Մեղուն շալը ուզեց ծալի,
Տանի իր հետ, իր մոտ պահի,
Բայց ոստայնի մեջ խճճվեց,
Իսկ նենգ սարդը ինչպես մի ցեց
Կծմթում էր ճանկերով սուր,
Թե քո խայթը՝ ասեղը սուր,
Որ կտրից իմ այս բեհեզ
Մի գեղեցիկ շոր կարեմ քեզ:
Մեղուն ասաց. «Ինչպե՞ս տամ քեզ,
Մի մարմին ենք ասեղն ու ես.
Ու հիմա էլ շալի տեղակ,
Գործել ես դու ոստայն-ծուղա՞կ...
Ա՛յ դու խարդախ ու անաչխատ,
Ահա քեզ խայթ, ահա քեզ խայթ»:
Ու նա այնպես ուժգին խայթեց,
Որ նենգ սարդը փքվեց, պայթեց:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Ֆոկուսներ

*Բաժինը վարում է*
*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ*
*(Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ)*

## ԱՌԱՋԱԲԱՆ

Ֆոկուսը գոյություն ունի դեռևս հին ժամանակներից:

Իրենց ֆոկուսնիկ համարող մարդիկ անցնում էին բակից բակ և ցուցադրում պարզունակ ֆոկուսներ: Նրանք խավարամիտ ժողովրդին հավատացնում էին, որ իրենց կատարած ֆոկուսները ինչ-որ կախարդական զորության արդյունք են:

Անցան տարիներ: Սովետական իշխանությունը մեր ժողովրդին բերեց կուլտուրա և կրթություն: Այն ամենը, ինչ անցյալի ֆոկուսնիկները վերագրում էին հրաշքին, այժմ միանգամայն հասկանալի է և բացատրվում է ֆիզիկայի, քիմիայի ու մեխանիկայի օրենքներով:

Չնայած դրան, մինչև այժմ էլ ֆոկուսնիկները հետաքրքրում են հանդիսականներին: Պատճառն այն է, որ ֆոկուսնիկությունը զարգանալով դարձել է արվեստ և կոչվում է արդեն իլյուզիա և մանիպուլյացիա (ձեռնածություն): Արվեստի այս տեսակը լայն կիրառում է գտել ոչ միայն մեր, այլև արտասահմանյան կրկեսներում ու էստրադաներում և ամենուր հետաքրքրությամբ ու հաճույքով է ընդունվում հանդիսականների կողմից:

Սակայն ոչ բոլորն են հասկանում այդ գեղեցիկ և բարդ արվեստի նրբությունները. հաճախ չեն տարբերում իլյուզիան մանիպուլյացիայից (ձեռնածությունից):

Իլյուզիոնիստ-արտիստը հանդես է գալիս խոշոր սարքավորումով՝ արկղներով, սեղաններով, ամենատարբեր անոթներով, սկահակներով, որոնց մեջ թաքնված է անպայման մի գաղտնիք:

Մանիպուլյատոր (ձեռնածու)-արտիստը ի տարբերություն իլյուզիոնիստին, հանդես է գալիս դատարկ բեմի վրա, բոլորովին դատարկ ձեռքերով: Մանիպուլյատորի արվեստը շատ ավելի դժվար է, քան իլյուզիոնիստինը: Նա հարուստ հնարամտության և ստեղծագործության հետ միաժամանակ պետք է ունենա ճկուն և արագաշարժ մատներ ու ձեռքեր: Ձեռքերի ու մատների գերազանց վարպետություն ձեռք բերելու համար պետք է հետևողականորեն և համառ մարզվել: Այն, ինչ հանդիսատեսն ընդունում է հեշտ ու հանգիստ, արտիստից պահանջում է երկար տարիների քրտնաջան աշխատանք: Մանիպուլյատորի արվեստը առաջին հերթին շարժումների և հնարանքների գեղեցկություն է, որը ցուցադրում է արտիստը իր ձեռքերի ճարպիկ և անբռնազբոսիկ շարժումներով:

Հանդես գալով այդ ժանրում, և այդ արվեստում ունենալով մեծ բեմական փորձ, ես ուզում եմ իմ փորձը հաղորդել ձեզ, պատանի ընթերցողներ, որպեսզի դուք կարողանաք յուրացնել այդ արվեստի նախնական աստիճանը և կարողանաք ինքնուրույն հանդես գալ: Իսկ եթե ձեր մեջ կլինեն այնպիսիները, ովքեր կցանկանան խորանալ այդ արվեստում, նրանց համար լավ հիմք կծառայեն այն բոլոր ֆոկուսների բացատրությունները, որոնք կկարդաք ներքևում:

Ուշադիր կարդալու ու վարժվելու դեպքում դուք կկարողանաք այդ ֆոկուսները ցուցադրել դպրոցական ինքնագործունեության երեկույթներում:

Ամենից առաջ ես ուզում եմ ձեզ ներկայացնել այն առարկաների ցուցակը, որոնք անհրաժեշտ կլինեն երեկույթի ժամանակ: Այդ բոլոր առարկաները իմ բացատրությունների հիման վրա կարող եք ինքներդ պատրաստել:

1. ԻԼՅՈՒԶԻԱՅԻ ՓՈՔՐԻԿ ՍԵՂԱՆ. պատրաստելու համար հարկավոր է վերցնել 50 60 սմ մակերեսով հաստ ֆաներա, աջ և ձախ եզրերից 10—սմ. դեպի ներս կտրել երկու կլոր անցք, յուրաքանչյուրը 8 սմ տրամագծով: Այդ անցքերը ձեզ համար պետք է ծառայեն որպես գաղտնարան, որտեղ պետք է անհետանա այս կամ այն իրը:

Ֆաներայի կենտրոնում, ներքևի կողմից ամրացնել քառակուսի տախտակ—լուսանկարչական ապարատի եռոտանին պտուտակով ամրացնել տախտակին, և իլյուզիայի անհրաժեշտ սեղանը կարելի է պատրաստ համարել: Բայց որպեսզի սեղանը հաճելի տեսք ունենա, պետք է այն ծածկել 70.80 սմ գունավոր ու նախշուն շորով, որի եզրերին կարելի է փայլքեր կա-



1

րել: Չէ՞ որ ինչքան վառ ու շքեղ լինի ձեր իլյուզիայի սեղանը, այնքան ավելի հավատ կներշնչեք հանդիսատեսին:

Սեղանի երեսին կտրված անցքերի տեղում, ծածկոցի վրա նույնպես պետք է համապատասխան անցքեր կտրել, անցքերի եզրերից պետք է կարել ու կախել գրպանիկներ, որոնք չպետք է երևան ծածկոցի տակից: (տե՛ս նկ. 1)

2. ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՓԱՅՏԻԿ. պետք է վերցնել 25—30 սմ երկարությամբ սովորական մի փայտիկ, հղկել և երկու ծայրերը ներկել սև տուշով: (տե՛ս նկ. 2)




3. ՍԵՎ ՏՈՒՓ. պետք է պատրաստել ստվարաթղթից կամ ֆաներայից 15.20 սմ մեծությամբ, առանց կափարիչի և դրսից ներկել սև գույնով: (տե՛ս նկ. 3)




Այդ տուփի մեջ դուք պետք «խորհրդավոր» անհետացնեք և այնտեղից «հրաշքով» դուրս հանեք այս կամ այն իրը:

Ոչ պակաս կարևոր է նաև ելույթի նախապատրաստումը: Դեռ վարագույրը չբացված դուք պետք է ձեր սեղանին դասավորեք ֆոկուսների համար հատկացված առարկաները այն հերթականությամբ, ինչ հերթականությամբ պետք է նրանք ցուցադրեք հասարակությանը: Ֆոկուսները ցուցադրելու ժամանակ բեմահարթակի վրա պետք է կանգնել երեսով դեպի դահլիճը, իսկ սեղանին մոտենալիս, ծայրահեղ դեպքում կարելի է միայն կիսով չափ մեջքով շրջվել դեպի հանդիսատեսը:

# ԱՌԱՋԻՆ ՖՈԿՈՒՍ

## «ՄԵՏԱՂԱԴՐԱՄԻ ԱՆՀԵՏԱՑՈՒՄԸ ԹԱՇԿԻՆԱԿՈՒՄ».

Վերցրեք 40×40 մետաքսե բարակ և նախշուն մի թաշկինակ: Վեր տարեք բաճկոնի թևերը, որպեսզի հանդիսատեսը չկասկածի, թե դրամն անհայտանում է նրանց մեջ: Ապա աջ և ձախ ձեռքերի երկու մատներով բռնեք թաշկինակի ծայրերից և ցուցադրեք հասարակությանը թաշկինակի երկու երեսը: Թաշկինակը փռեք աջ ձեռքի ափի վրա, հանդիսատեսներից որևէ մեկին խնդրեք բեմ բարձրանալ և մի որևէ մետաղադրամ դնել թաշկինակի վրա: Որից հետո, մետաղադրամը թողնելով ափի կենտրոնում, ձախ ձեռքով թաշկինակի չորս ծայրերը վրա բերեք, ոլորեք և խնդրեք հանդիսատեսին շոշափել դրամը: Ապա նրան հանձնելով ոլորված թաշկինակով մետաղադրամը, դուք մոտեցեք սեղանին և վերցրեք «կախարդական» փայտիկը: Վերադարձեք և փայտիկը թաշկինակի դեմ մի քանի անգամ շարժելուց հետո, բռնեք թաշկինակի ծայրից, հաշվեք մինչև երեքը, թափահարեք թաշկինակը... և հասարակության աչքի առաջ մետաղադրամն անհետանում է:

Ֆոկուսի ամբողջ գաղտնիքը կայանում է հետևյալում՝ նախօրոք թաշկինակի մի անկյունում նույն կտորից կարում եք մի փոքրիկ գրպան և նրա մեջ դնելով 15 կամ 20 կոպեկանոց մետաղադրամ՝ կարում: Մի ձեռքի երկու մատով բռնելով թաշկինակի այդ ծայրը, իսկ մյուսով ազատ ծայրը, դուք թաշկինակի երկու երեսն էլ ցույց եք տալիս հանդիսատեսին:

Թաշկինակն ափի վրա փռում եք այնպես, որ մետաղադրամով ծայրը կախված լինի ձեր կողմը և հանդիսատեսը չնկատի այն: Երբ հանդիսատեսը մետաղադրամը դնում է թաշկինակի վրա, դուք այն առաջին հերթին ծածկում եք մետաղադրամը պարունակող ծայրով, ապա վրա եք բերում մյուս ծայրերը և աննկատելիորեն հանդիսատեսի դրամը վերցնում: Ձև տալով թաշկինակն այնպես, որ կարված դրամը լինի կենտրոնում, ոլորում եք ծայրերը և տալիս հանդիսատեսին: Մոտենում եք տուփին, նրա մեջ զգուշությամբ դնում ձեր ափում մնացած իսկական դրամը և այնտեղից կախարդական փայտիկն առած՝ վերադառնում: Որից հետո վերցնելով հանդիսատեսից թաշկինակը և գաղտնիքով ծայրից բռնած թափահարելով՝ դուք կզարմացնեք հանդիսատեսին դրամի անհետացումով:











## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ՍԱՐԳԻՍ
ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

**Այս համարի հետ անվճար տրվում են էջեր հոկտեմբերիկների համար.**

# ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆԻ անվան պիոներական կազմակերպության 40-ամյակի առթիվ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է պատանիների ստեղծագործությունների՝ պատմվածքների, բանաստեղծությունների և նկարների*

## ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան բոլոր երեխաները։*

*Խմբագրության հավանությանն արժանացած պատմըվածքները, բանաստեղծությունները ու նկարները նախ կտպագրվեն ամսագրում, ապա նոր կորոշվի, թե որ գործին տալ այս կամ այն մրցանակը։*

*Մրցանակաբաշխության նյութերը պետք է ուղարկել 1961 թ. հունիսի 1-ից մինչև 1962 թ. մարտի 1-ը։ Տպագրությունը կսկսվի 1961 թ. սեպտեմբերից և կավարտվի 1962 թ. ապրիլին, իսկ մրցանակաբաշխության արդյունքները կհրապարակվեն մայիսին։*

ՍԱՀՄԱՆՎԱԾ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ.

Երեք առաջին կարգի մրցանակ
Վեց երկրորդ կարգի մրցանակ
Եվ տասը՝ երրորդ (խրախուսական)։

*Մրցանակները կլինեն՝*

*Լուսանկարչական ապարատներ, ինքնահոս գրիչներ, նկարչական պիտույքներ, գեղարվեստական գրքեր և այլն։*

*Մեր հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, «Պիոներ» ամսագրի խմբագրություն, մրցանակաբաշխության ժյուրիին։*

*Նյութերն ուղարկելիս՝ չմոռանաք նշել ձեր տարիքը։*

«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ





Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 10351 Պատվեր 750. Տպաքանակ՝ 9000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/VI 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։ Գինը 20 կ.։



# ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

«Մի քանի գնդակի տարածություն էր մնում մինչև թշնամին,— պատմում էր մի հին ճակատային զինվոր։— Պատրաստվում էինք շարժվելու դեպի կրակային գիծը։ Հանկարծ ինչ-որ խոսք ու խլրտում ընկավ զինվորների մեջ։ Հայտնվեց մի մարդ՝ քաղաքացիական հագուստով, անշուշտ, թիկունքից եկած։

— Գրող Զարյանն է, կրակագիծ է գալիս, անցավ բերնեբերան։

— Հը՞մ, ինչպե՞ս թե...

— Ախր ո՞նց կարելի է։ Դե մենք՝ ոչինչ, բայց ախր նա... Բա որ...

— Քնա՞ծ են վերևում, ինչ է...

— Ափսո՜ս...

Նրան, իհարկե, որ հասնեւր մինչև առաջին բնագիծը,— ավելացրեց հին զինվորը՝ ավարտելով իր զրույցը։— Սակայն մեզ հետ առաջին բնագիծը հասավ այն շիկացած ատելությունը դեպի թշնամին և այն անձնուրաց ոգին, որ բոցաշունչ բանաստեղծը իր հետ բերել էր մեր հինավուրց, հայրենաբույր հողից։ Եվ մենք՝ զինվորներս, ավելի խորն զգացինք, որ իսկապես արժե կռվել և լավ կռվել...»

Սա լեգենդ չէ, այլ հավաստի մի դրվագ հայրենասեր բանաստեղծի անցած ճանապարհից։ Դա ծանր ու սխրալի մի ճանապարհ էր, որ բանաստեղծին հասցրել էր մինչև բյուրավոր ընթերցողների սիրտը, այն խանդավառ ընթերցողի, որը կյանքում ղուցե առաջին անգամն էր տեսնում մարտիկ-բանաստեղծին։

* * *

Ես չեմ ունեցել անհոգ մանկություն.
Պատանեկության երջանիկ օրեր...

Սա ծանր մի խոստովանություն է ոչ միայն Նաիրի Զարյանի, այլև մի ամբողջ սերնդի հայ պատանեկության համար, որին վիճակված էր տեսնելու մեր ժողովրդի կյանքում ամենաողբերգական օրերը՝ կոտորած, գաղթ, որբանոց, զրկանքներով լի տարիներ։

Սակայն, չնայած աննպաստ պայմաններին, օժտված ու տքնաջան պատանին կարողացա՛վ գտնել իր ուղին, ձեռք բերել այն ամենը, ինչ անհրաժեշտ էր լավ գրող դառնալու համար։ Իսկ Սովետական իշխանության հաստատումից հետո, նրան վիճակվեց, Չարենցի հետ միասին, որոնել նոր գրականության զարգացման ուղիները և դնել առաջին նշանացույցները։

Բեղուն և բազմաժանր է Ն. Զարյանի գրիչը։ Ինչի որ ձեռք է զարկել մեծատաղանդ գրողը, եղել է անվրեպ, ինչի որ ձեռք է մեկնել, ստացվել է լիաբուռ։ Ո՞րը հիշենք։ «Ռուշանի քարա՞փը», «Երկու հանձարեղ գլո՞ւխը», «Զայն հայրենականն» ու բոցաշունչ հայրենասիրությամբ գրված բանաստեղծություննե՞րը, «Հացավանն» ու «Պարոն Պետրո՞սը» — այնքա՜ն բազմազան ու արգասավոր է չորս տասնամյա ուղին։ Շատերն են փորձել հարություն տալ մեր երկաթագիր գողթան երգերին, մեր վաղեմի առասպելներին։ Արա գեղեցիկի լեգենդը շատ բանաստեղծների է ներշնչել գրելու պոեմ, դրամա։ Այդ գործերից շատերը դեռ աշխարհ չեկած, խամրել են, մյուսներն էլ, օրվակաս լինելով, մի քանի տարի հազիվ են ապրել։

Եվ ահա, Զարյանի գրչով, ասես անջինջ սեպագրերով քանդակվեց հայրենաշունչ առասպելը՝ անզուգականորեն գեղեցիկ, աննախընթաց։

Իսկ մեր գրական տիպերի մեջ՝ Ջիմգիմովի, Զամբախովի ու Բղդեի կողքին, կոլխոզից թոցրած ծմերուկները թևի տակ կանգնած, չքմեղ ժպտում է հռչակավոր Բալաբեկը։

Քիչ է գրել Զարյանը մանուկների համար, բայց նա խոստանում է այսուհետև ավելի հաճախ հիշել մանուկ ու պատանի ընթերցողներին։

Իսկ այսօր, ստեղծագործական ճանապարհի հինգերորդ տասնամյակի շեմքին մաղթենք սիրելի գրողին նոր եռանդ ու կորով՝ հզոր գրչով պատկերելու մեր հարուստ կյանքը, հրաշունչ խոսքով վառ պահելու սերը դեպի հայրենի օջախը, սերը դեպի մեր «մեսրոպատառ, քաղցրաբարբառ հայոց լեզուն»։

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

ԱՐԱՐԱՏ

ԴԱՐԲԻՆՅԱՆ ՄԱՆՎԵԼ (7 տար. Երևան)



ԱՆՏԱՌՈՒՄ

ԹԱՎԱԴՅԱՆ ԼԵՎՈՆ (9 տար. Պուշկինի անվան դպրոցի 3-դաս. աշակերտ)